# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 4. 90



*Հանձնված է արտադրության 02.03.90 թ.: Ստորագրված է տպագրության 01.06.90 թ.: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 51332: Պատվեր 224: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 02.03.90 г. Подписано к печати 01.06..90 г. Формат 70×100 1/61. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 51332. Заказ 224. Цена 15 коп.

Напечатано в типографии изд.-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջին՝ «Անդրանիկ», գործ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# Ես մի զարկն եմ քո կովի, Հայրենիք, չքնաղ Հայաստան

Սովորության նման էր դարձել, սովորական մի բան անելու պես յուրաքանչյուր հանդես ու ամսագիր ապրիլյան համարը նվիրում էր 1915 թ. եղեռնի զոհերի հիշատակը ոգեկոչելուն, բացում էինք մեր ցավն ու ողբերգությունը, վերապրում, հուզվում, բորբոքվում...

Այդ էր թույլատրված, այդքանի իրավունք էինք վաստակել 1965-ին արթնացած, Երևանի փողոցներում «մեր հողերը», «մեր հողերը» ձայնող բազմահազար առաջին ցուցարարների շնորհիվ:

Բայց ժամանակ անցավ, ու հասկացանք, որ միայն վերհիշելով ու ողբալով ազգ չենք դառնալու ու թե ընդոստ վեր չթռչենք՝ հալվելու-կորչելու ենք խորհրդային կոչվող այս Բաբելոնում:

Արթնացած ժողովուրդը թափ տըվեց իրեն, մի պահ [illegible] իր ուժն ու միասնությունը և հիմա [illegible] [illegible]

[illegible]





Զորավար Անդրանիկն իր զինակիցներով

«Իմ այն զինվորներիս, որոնք մինչև վերջ կանգնեցին իմ կողքին և կերտեցին հայի փառքը.

Երբ թղթերիս ծրարները կքրքրեի, «Կովկասյան ճակատ»-ի վրա ձեր կատարած գործերի համեստ օրագրության հանդիպեցի, ձեր ընկեր զինվորներից մեկի կողմից նոթագրված: Կարոտցած բարեկամի, սիրական դեմքի նման ողջագուրեցի այն և համբուրեցի՝ ձեզ համբուրելու անուշ զգացումը ունենալով:

Ձեր ընկերը, իր համեստ կարողությամբ, նոթագրած չէր և ոչ էլ պատմած՝ ձեր կրած չարչարանքները, զրկանքները ու նեղությունները, այլ մեկ-երկու տողերով օրվա անցքերը և մեծ կռիվները հիշատակած:

Օր մը, միգուցե, այդ զոհողությունները պետքի մը ծառայեն:

Սիրելի զինվորներս...

... Վերջին տխուր դեպքերի առջև երբ կկարմրինք, և երբ օտարներ կփորձեն անվանարկել հայ զինվորի արժանապատվությունը, դուք ձեր քաջությամբ, գործերով և ձեր պատմությամբ արհամարհեցիք զանոնք, բարձր պահեցիք հայ ցեղին արժանապատվությունը:

Դուք գիտցաք կռվիլ, կռվիլ անոր համար, դուք կհասկնայիք անոր արժեքը: Դուք կրցաք պարտության մատնել թըշնամիին և հիացում հրավիրեցիք ձեր վըրա անոր համար, որ գիտեիք նվիրվիլ և գիտեիք ծառայել հայրենիքին և անոր ազատության:

...Մեծ համբերությամբ կրեցիք ձեր չարչարանքները և մեծ հավատքով տարիք ձեզի հանձնված գործը: Ես չլսեցի տրտունջի որևէ բառ, ցավի որևէ արտահայտություն:

Մերկ էիք, անոթի էիք և այդպես մընացիք օրերով. ձմռան ցուրտը, բուքն ու քամին, ձյունն ու անձրևը ծեծեցին ձեզ, կարկուտը հարվածեց, բայց դուք արհամարհեցիք, ինչպես թշնամու գնդակները:

Ձեր այս կեցվածքը քաջալերեց զիս, ուրախացրեց սիրտս, և մենք կրցանք շահել փառավոր հաղթանակներ «Հայ անունին համար»:

Սիրելի զինվորներս, սա մեկ քանի տողերս, իբր հարգանքի և գնահատանքի նշան, ձեզի կթողնեմ իբրև կտակ և սըրտանց՝ ապրողներուդ և իբր տապանաքար՝ անթաղ և անշիրիմ զինվորներիս:

**ԱՆԴՐԱՆԻԿ**

**Ֆրեզնո, հունիս 18, 1924»:**

Սիրելի Անդրանիկ,

Ահավոր մոմենտի առջև ամեն մարդ պետք է ընդհանուր սեղանին բերի ինչ որ ունի և կարող է՝ թե՛ վերահաս վտանգը կանխելու և թե՛ բաղձալի խաղաղությանը հասնելու համար։

Ես չորս տղա ունեմ, չորսն էլ երկրի կառավարության, Ազգային Խորհրդի և Քո տրամադրության տակ են, իսկ չորս աղջիկս էլ պատրաստակամ գնում են թիկունքի աշխատանքներին՝ ինչի որ ընդունակ կլինեն։ Ես էլ, անշուշտ, սրանցից թանկ ոչինչ չունեմ, հետևաբար ոչինչ չեմ խնայի, միայն թե կարողանանք բոլոր ազնիվ ժողովուրդների և ազատասեր հոգիների հետ **միասին** ետ մղել **վերահաս** վտանգը և պաշտպանել ամենքիս սրբազան իրավունքներն ու ազատությունը։ Ես անսասան հավատում եմ Քո՝ շատ փոթորիկների մեջ ձեռք բերած փորձությանը, վառ հայրենասիրությանն ու ազատասիրությանը, այլև բնական մարդասիրությանը ու զինվորական բարձր տաղանդին, և պատրաստ եմ գալու, երբ և ուր կկոչի Քո եղբայրական ձայնը։

Համբուրում եմ հերոսական ճակատդ,

Միշտ Քո

ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Հ. Գ.— Սրա հետ միասին, որովհետև



ես էն կարծիքին եմ, որ ամեն Հայ այժմ պետք է իրեն դնի կամավոր տուրքի տակ, պարտավորվում եմ ամսական հարյուր ռուբլի տալ էս նպատակով մեր ընդհանուր գանձարանին։

1917

— Վերջացա՞ծ է հիմա ամեն բան։ Ոչ։ Ուժը, որ Անդրանիկը ծնավ, մենք կհավատանք, թե վերադարձած է ազգին ծոցը ու հոն ծածուկ կապրի հիմա Անդրանիկի հոգիով ալ ավելցած։ Անդրանիկի հոգին մեկ մասն է այսօր հայության հոգու, անոր ամենեն ազնիվ, ամենեն հարգի մասին։

... Մեր խորին համոզումն է, թե որքան տարիները թավալին իր գերեզմանին հողին վրա, այնքան պիտի մեծնա Անդրանիկի դեմքը և մեծնալով՝ հայության երկինքին վրա անիկա հուսափայլ ու մեկ հատիկ պիտի դառնա։

Մեր ժամանակակից կյանքը կրնա իրավ ցավի և զարհուրանքի շատ էջեր հայթայթել հայ գրողին, բայց ոչ մեկ կյանք սրտատրոփ հիացմամբ ու վերացնող խանդավառությամբ զայն ավելի պիտի ներշնչե՝ քան կյանքը Անդրանիկին, պայմանով, որ գրողը գիտնա իր նախնական հոգովը զայն ընդունել, ինչպես պարզ



մարդիկ՝ ժողովուրդնե շատեր և իր բոլոր զինվորները, ընդունած են զայն ու իրենց սովորական էությունենեն վեր և անդին կանցնին՝ ամեն անգամ որ ան կուգա կանգնիլ իրենց հոգիի աչքերուն առջև:

Երեկ էր, որ այդպես, մեկը հազարավորներեն, երիտասարդ մը, որ հինգ ամբողջ տարի Պետին հետևած էր արյան և կրակներու մեջեն, անոր հաղթանակներուն ուրախության և հուսախաբություններուն դառնության մասնակից էր եղած, մեզի կխոսեր անոր մասին այնքան տաք ու վստահալից, այնքան ամուր և հանդարտ կերպով մը՝ որ անոր ներկայությունը դեռ կզգար և պատկառանքը կկրեր կարծես, ինչպես հավատացյալը Աստծու վրա խոսած պահին: Անոր համար՝ ապահով ենք, որ Անդրանիկ մեռած չէր այդ վայրկյանին և կհավատանք, որ երբեք, որչափ ինքը կապրի, այն պիտի չմեռնի իր մեջ, ոչ թե իբրև հիշատակ միայն, այլ իբրև կյանքի ներշնչող ու ոգևորող ներկայություն...

ՎԱՀԱՆ ԹԵՔԵՅԱՆ

---

«Սասունի արծիվը չկա այլևս»:

Հայ ազգային ազատագրության գաղափարի ծիրանին է դողդողում, ու նրա խորհրդավոր ծալքերի մեջ արցունք է թափում ազգը:

Մանուկները ծնողի մահը չեն ըմբռնում, ազգերը՝ հերոսի:

— Անդրանիկ հայ ժողովրդի համար անհատ չէ, այլ մարմնացումն է մի հզոր ու անսասան գաղափարի: Եվ իբրև այդպիսին՝ նա ժողովրդի երևակայության մեջ անանձնացած, դյուցազնացած է: Կուռք է Անդրանիկը, որ մեր ժողովուրդն է կռել, կոփել ու քանդակել համապատասխան իր դարավոր իղձերի, ձգտումների, ամբողջ իր իդեալին, արդարության և իրավունքի ծարավ իր հոգու պահանջներին:

— Անդրանիկ գերազանցորեն հեղափոխական էր: Ըմբոստացած հողի ցասումն ու ընդվզումը:

Եվ հենց դրա համար է, որ հողի ու քրտինքի մարդիկ այնպես պինդ սիրեցին նրան:

Առաջնորդ, շեֆ էր ծնված Անդրանիկ: Ամեն տեղ ու ամեն պարագաներում Անդրանիկ մնում էր տիրական, իշխող ու հրամայող:

— Կուսակցության չէր կարող տոկալ Անդրանիկ, թեև ոտքից գլուխը դաշնակցական էր: Ավելին՝ կասեմ, նա կուսակցություն բնավ չէր էլ հասկանում, ավելի ևս պետականություն, որի մասին շատ թյուր ըմբռնում ուներ:

— Հախուռն՝ իր մասնավոր կյանքում ու հարաբերություններում մեջ, նա որքան զգուշավոր ու իմաստուն էր ճակատամարտում: Զինվորները պաշտում էին նրան: Ռազմական շեֆ էր ծնված Անդրանիկ:



— Նրան լսելիս մարդ զգում էր, որ համայն հայ ժողովուրդը այս անզուգական մարդու կրծքի տակ է ամփոփված, ինչպես ճուտերը թխսի թևերի տակ:

— Եվ հայրենական ցավի պոռթկումից դուրս նա ուրիշ զայրույթ չուներ: Իր մասնավոր նիստուկացի մեջ ամենաանուշ մարդն էր, ամենահավատարիմ ընկերակիցը:

Սիրում էր հայ խոնարհ, աշխատավոր ժողովուրդը և ատելով ատում էր մեր այն քցի ունևորներին, որոնց հոգին թղթա-

պանակներում միշտ փակված մնաց մեր աշխարհն ալեկոծող ողբերգական անցքերի օրերին»:

## ԱՎԵՏԻՍ ԱՀԱՐՈՆՅԱՆ

«Անդրանիկը մեռավ իր փափագին չըհասած, որ ազգին էր միանգամայն, բայց նա երկար ու անձնուրությամբ ծառայեց համազգային նպատակին, ուստի իր անունն ու հիշատակը դարձան համազգային: Կամավոր նահատակների մի ընտիր խումբ, որ պայքարի մտավ քառորդ դար առաջ և որոնց շարքից էր նաև Անդրանիկը, նույնքան անձնազոհ էր, որքան նա: Նոր մարտական հայության առաջին ծիլերն էին, ամեն մեկը ընտրված հազարի միջից, ամեն մեկը մի զորավոր անհատ. բայց ընտիրների և զորավորների մեջ աչքի ընկավ Անդրանիկը:

...Նա ունեցավ շատ զինակիցներ և շատ ավելի հետևորդներ, որ մեծացան նրա ծանր ձեռքի տակ, բայց մնացին միշտ կապված նրան:

Հզոր անհատներ—ինչպես Մուրադ, Կայծակ Առաքել— նրա կողքին պայքարեցին թշնամու և օրհասի դեմն, և նա կարողացավ պահել նրանց միացած և ընկեր: Դրա համար պետք էր մարտիկի հըմայք, ընկերական ոգի և արդարամիտ վերաբերում...

Իր գործը ծանոթ է ամենքին և անցած է պատմության, իսկ իր կյանքը, եթե գըրվի ստուգապես, ընտրանքով և վերապրումներով՝ լավագույն դպրոցը կդառնա հետագա սերունդների համար, որ այնտեղ կառնեն գաղափարական նվիրման և անշահախնդիր ռազմասիրության դասեր: Իսկ մենք, որ տեսած ենք նրան, վըկան ենք իր գործերին ու երբեմն եղած ենք գործակից՝ խոսացենք այստեղ մի քանի տպավորություններ...

Իր խառնվածքը երկու հզոր և հիմնական կիրք ուներ, որ իբրև երկու լար միշտ հնչուն էին նրա կյանքի և գործի մեջ. անվերապահ ատելություն դեպի թրքական իշխանությունը և խորին ու գործոն սեր դեպի հայ ժողովրդի խոնարհ խավերը, հատկապես դեպի գյուղացին...:

...Իր ըմբռնումը ռազմական կացության մասին կովի սահմանափակ դաշտի վրա հավասար էր մարգարեության, հրացանի պայթումից նա գուշակում էր մոտալուտ գալիքը:

... Մարդիկ թե կամավոր մեծ հակում ունեին նրա անունից, այլ մանավանդ նըրա ղեկավարության տակ իրենց տեսնելով ապահով: Անդրանիկ, որ հաճախ հախուռն էր իբրև սոսկական անհատ՝ չափազանց հանդուգն էր իբրև ճակատող: Պետք եղած ժամանակ չափազանց հանդուգն՝ նա ընդհանրապես խնայում էր իր զինվորներին և կարողանում էր գործեր կատարել չնչին զոհերով կամ անել համարված կացություններից անսպասելի ելք գտնել առանց կորստի:

... Անշահախնդիր էր իբրև մարդ, իր միտքը միշտ լուրջ էր և հանրային գործով պարապած: Անհատական կյանքն ու հոգը աննշմար տեղ էին գրավում նրա հոգու մեջ...:

...Պատմելու մեծ շնորհ ուներ և անվրեպ հիշողություն: Իր երևակայությունը պայծառ էր, մանրամասները՝ ողորկ: Եթե գըրել իմանար՝ առաջնակարգ հեղինակ կլիներ: Նրա հետ հաճույք էր զրույց անելը:



... Անդրանիկը զորավոր կրքեր և մեծ կարողություններ ուներ. մարտիկի դըժվարին կյանքը և Դաշնակցության միջավայրը մշակեցին նրա մեջ գաղափարի զինվորին և հայությանը տվին համազգային մի հերոս»:

**ՆԻԿՈԼ ԱՂԲԱԼՅԱՆ**

# Վերադարձ

**Ազգային զարթոնքը գրեթե ամեն ասպարեզում կենդանի մարմին է առնում, համընդհանուր ոգևորությունը կոնկրետ արդյունքներ է ծնում: Սառույցը շարժվել է: Շարժվել ու ճաքեր է տալիս նաև հյուսիսից մեզ պարտադրված լեզվական սառույցը: Հայաստանի ռուսական դպրոցներում արդեն մի քանի դասարաններ կան, որոնք հրաժարվել են ռուսական կրթությունից, դարձել են հայկական: Ահա դրանցից մեկի՝ Երևանի կենտրոնում գտնվող Չեխովի անվան դպրոցի 8-րդ Գ դասարանի վճռական քայլի մասին են պատմում երեխաները ու ուսուցիչները:**

ՄԱՐԻՆԵ ՏԵՐ-ՄԱՐԳԱՐՅԱՆ.— Մինչև ղարաբաղյան շարժումը, անկեղծ ասած, ինձ չէր անհանգստացնում, որ սովորում եմ ռուսական դպրոցում: Հայ ժողովուրդը վերածնունդ ապրեց, մենք էլ արեցինք այն, ինչը պարտավոր էինք անել՝ ռուսական դպրոցում պահանջեցինք մեր դասարանը դարձնել հայկական: Երախտապարտ ենք հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Կիմա Դանիելյանին, որը սեր արթնացրեց հայոց գրի ու գրականության հանդեպ: Մեզ օգնեցին նաև «Մաշտոց» հասարակական կազմակերպության անդամները:

Իմ կարծիքով՝ ես ամենակարևոր քայլն եմ կատարել կյանքում: Եվ կոչ եմ անում բոլոր այն հայ երեխաներին, որոնք ցավոք սրտի դեռ սովորում են ռուսական դպրոցներում, անցնել հայկական ուսուցման: Մի վախեցեք դժվարություններից, հետևեք մեր օրինակին: Հայը առաջին հերթին պետք է սովորի իր մեսրոպատառ այբուբենը, հայերեն կարդա, գրի, իմանա իր ազգի պատմությունը: Եթե ոչ մեր սերունդը, ապա էլ ո՞վ պետք է մտածի մեր ապագայի, մեր ժողովրդի գոյատևման մասին:

Ծնողներ, ուղղեցե՛ք ձեր ծնողների սխալը:

ՀԱՍՄԻԿ ՍԱՐԳՍՅԱՆ (դասղեկ, անգլերեն լեզվի ուսուցչուհի).— Այս դասարանի երեխաները իրենց հասակակիցներից ավելի զգայուն են: Բերեմ մի օրինակ: Երկրաշարժի երկրորդ օրը, երբ ամբողջ դպրոցը տագնապած ու շփոթահար էր, երբ ոչ ոք չգիտեր՝ ինչ անել, դասարանը միակն էր, որ արձագանքեց, առաջ իր խոսքը: Առավոտյան դպրոցի մուտքի վրա դասարանի պատուհանից խոնարհվել էր մի հսկայական սև դրոշ: Շատ ազդեցիկ պատկեր էր:

Երեխաների ազգային ինքնագիտակցությունը բարձր է: Սա, անկասկած, արդյունք է արցախյան պահանջատիրության: Նրանք հաճախ են մասնակցում միտինգների և իրենք էլ դասարանում այնպիսի հարցեր են քննում, որոնք իրենց բնույթով ամենևին էլ մանկական չեն: Ու զարմանում ես՝ այդ ե՞րբ հասցրեցին մեծանալ, այդ ի՞նչ հրաշք է կատարվում մեր աչքերի առաջ:

Դեռ անցյալ տարի երեխաները հաճախ էին խոսում հայոց լեզվի դերի ու նշանակության, իրենց ծնողների ժամանակին թույլ տված սխալի մասին: Եվ բնական էր, որ վաղ թե ուշ պետք է ծագեր հայկական ուսուցման անցնելու գաղափարը: Դա ինձ համար անակնկալ չէր: Սկզբում ծնողներից ոմանք դեմ էին: Մի քանի անգամ հանդիպեցինք, զրուցեցինք: Բայց պետք է ասեմ, որ հիմնական աշխատանքը կատարեցին իրենք՝ աշակերտները: Մեզ շատերը օգնեցին, սակայն ամենակարևոր գործոնի դերը կատարեց, անշուշտ, ժամանակը:

ԱՐՄԵՆ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ.— Ես կարծում եմ, որ ամեն մարդ պետք է մտածի իր մայրենի լեզվով: Բոլոր առարկաների դասավանդումը ռուսերենով ռուսական մտածելակերպ է ձևավորում: Մենք խորությամբ անցնում էինք ռուս գրականություն, բայց հայոց լեզվին ու գրականությանը երեք խղճուկ ժամ էր հատկացված: Ի՞նչ կհասցնեինք սովորել այդ հաշված րոպեների ընթացքում: Եվ մենք ճիշտ որոշում կայացրեցինք: Լավ է ուշ, քան երբեք: Չպետք է թույլ տալ, որ Հայաստանում հայոց լեզուն կործանվի: Դա



մեր պարտքն է:

ՄԱՐԻՆԱ ՉԻԼՓՅԱՆ.— Վերջին երկու տարիները շատ բան փոխեցին մեր կյանքում: Այսօր ես ևս կարծում եմ, որ յուրաքանչյուր ոք առաջին հերթին պետք է իմանա իր մայրենի լեզուն, իհարկե, չմոռանալով մյուս լեզուները: Իսկ երեք դասաժամը բավարար գիտելիքներ տալ չի կարող: Ահա թե ինչու մենք որոշեցինք փոխադրվել հայկական դասարան: Ոչ բոլոր ծնողներն էին համաձայն: Սակայն երեխաները ավելի ուժեղ գտնվեցին: Ճիշտ է, դժվարություններ կան, բայց մենք կհաղթահարենք դրանք: Իսկ ի՞նչն է կյանքում հեշտ: Ինձ թվում է՝ սա իմ կյանքի ամենաճիշտ քայլն է:

ԺԱՆՆԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ.— Իհարկե, արցախյան շարժումից առաջ նման բան մեր մտքով չէր անցնում: Բայց սկսվեց պայքարը, և կարծես մենք արթնացանք խոր քնից: Մենք զգացինք մայրենի խոսքի պակասը: Բոլորն ասում էին՝ դժվար կլինի սովորել հայերեն, դուք յոթ տարի ռուսերեն եք պարապել, բայց մենք չհուսահատվեցինք: Չէ՞ որ մենք հայ ենք: Ճիշտ է, պետք էր շուտ մտածել այդ մասին, բայց դե ինչ արած, ժամանակներն ուրիշ էին: Ցանկանում եմ, որ ռուսական դպրոցներում սովորող երեխաները համարձակություն ունենան, չվախենան հետևել մեզ:

ԿԻՄԱ ԴԱՆԻԵԼՅԱՆ (հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի).— Նայում ենք մեր պատմության խորքը և տեսնում, որ միշտ էլ պահպանել ենք մեր լեզուն, մշակույթը, մաքառել մեր ազգի հարատևության համար: Մի փոքրիկ ժողովուրդ, լեռնոտ մի երկիր, պայքար լեզվի համար, պայքար ազգայնամոլ չկորչվելու համար... Թերևս այս ամենն ինձ ստիպեց ոտք դնել ռուսական դպրոց, բացել հայ երեխայի աչքերը, դասարաններում հնչեցնել հայոց լեզուն:

Ղարաբաղյան շարժում... Ալեկոծված են երեխաները, հատկապես այս դասարանը: Նրանց կրծքի տակ արթնացել էր հայկական ոգին, բողոքում են աչքերը: Հիշում եմ, այդ օրերին անցնում էինք Իսահակյանի «Երջանկության գաղտնիքը», դասարանում հնչում էին

փիդայական երգեր: Երգչախումբը իրենց ուժերով երեխաներն էին ստեղծել, որը ղեկավարում էր Տիգրան Բալոյանը: Կարճ ժամանակում նրանք միանգամից հասունացան: Եվ մտածեցի, որ ժամանակն է նրանց հանձնարարել Խաչիկ Դաշտենցի «Ռանչպարների կանչը»: Կարդացին հաճույքով, ցավով, զայրույթով: Փոքրիկ Միքայելի մայրիկը, որը նույնպես մեր դպրոցում է աշխատում, պատմեց, որ Միքայելը լաց է եղել փիդայիներից մեկի մահը պատկերող հատվածը կարդալիս ու խաղաղվելով քնել է՝ գլուխը գրքին դրած:

Արդեն նրանց երգերը լսվում էին Ազատության հրապարակում, վառվում էին աչքերը, ընդվզում հոգիները: Չգիտեմ ինչու, ուսումնական տարվա սկզբին, երբ մտա այս դասարանը, ինչ-որ մի բանի սպասում ունեի և չսխալվեցի:

— Մենք ցանկանում ենք ուղղել մեր ծնողների սխալը:

— Մենք ցանկանում ենք դառնալ հայկական դասարան:

Մեկ ամիս հետո դասարանը հայկական էր:

ՏԻԳՐԱՆ ԲԱԼՈՅԱՆ.— Ժամանակին ծնողներս ինձ ռուսական դպրոց տարան, որպեսզի հետագայում դժվարությունների չհանդիպեմ: Հիմա ժամանակն այլ է: Հիմա մենք վերադառնում ենք մեր մայրենիին, և Հայաստանում այսուհետև շատ ավելի մեծ տեղ պետք է տրվի հայոց լեզվին: Մենք փոխադրվեցինք հայկական դասարան, որովհետև չենք ցանկանում ռուսական կրթություն ստանալ, դրանով իսկ աղավաղել մեր հայկական մտածողությունը: Մենք այդ քայլը արեցինք այժմ, որովհետև չգիտենք՝ հետագայում այսպիսի հնարավորություն կլինի՞, թե՞ ոչ: Կարող է պատահել, որ երկիրը նորից ետ գնա դեպի լճացման տարիները: Ես ձեզ խորհուրդ եմ տալիս, իմ հասակակիցներ, իմ եղբայրներ ու քույրեր, ելեք մեր ետևից, մի՛ վախեցեք, այսպիսի հնարավորություն կարող է այլևս չլինել: Իսկ եթե դժվարություններ լինեն, հիշեք՝ մենք ձեզ հետ ենք:

**Ահա այսպես: Ուրիշ ոչինչ պետք չէ ավելացնել: Ասեմ միայն, որ դասարանում կախված պատի թերթը ամենաճշգրիտ վերնագիրն ուներ՝ «Վերադարձ»: Սառույցը հալվում է: Եվ վաղ թե ուշ մեր բոլոր երեխաները զարթնելու են հայոց լեզվի անմահական ջրերում, հայ մարդու մկրտության ամենասուրբ ավազանում:**



ՀԱԿՈԲ ՍՈՂՈՄՈՆՅԱՆ




Նկարները՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Դրսից ու ներսից ինքն իրեն պատնեշած մարդ էր Վահանը, անվերջ կրկնվող մեխանիզմ. ամեն օր, ամեն ժամ տեղապտույտ տալուց մաշվող մեխանիզմ:

Այդ օրը ոչ մի բանով չէր տարբերվում Վահանի ապրած մյուս օրերից. գորշ ու անհրապույր բացվեց Արարատյան դաշտի գարնանային առավոտը: Հողից գոլորշի էր բարձրանում: Օդում թույլ տնքոց կար: Վահանին թվաց, թե շարժիչն է փռչացել: Լարեց լսողությունը. շարժիչն աշխատում էր անթերի: Ականջներս դարձել են պառաված էշի ականջ, մտածեց Վահանն ու արագությունն ավելացրեց:

Սակայն շրջակայքում ինչ-որ անսովոր բան կար: Վահանն սկզբում գլխի չընկավ, թե ինչն է իրեն զարմանք պատճառում: Հետո հանկարծ տեսավ, որ ճանապարհի կողքի դաշտերում մարդ չկա, երեկ մրջյունի նման վխտում էին, այսօր մարդ չկար: Վահանն աչքի պոչով զննում էր շուրջն ու ինքն իրեն զարմանում. էդ ո՞ր օրվանից գլխի ընկան, որ ով չաշխատի՝ նա կուտի. քնեցին հիմար, զարթնեցին խելո՞ք, թե՞ էնքան քարի լույս են արել, որ լույս քարին մոռացել են:

Վահանը թեքվեց դեպի գյուղ տանող ճանապարհը: Գյուղից բազմաքանակ

խմբերով մարդիկ էին գալիս: Ավտոբուսի չէին սպասում, գալիս էին ոտքով: Ամենաքի առջևից, հրաշեկ մորուքը ծածանելով, սլանում էր Մալականի Ագրոնոմ Սաֆրազյանը, նրա ետևից զուր փորձում էին հասնել Կոպեկի Գերի Սեթոն ու Տկլոր Հակոբը: Համբառակ Հարութը, Վավաշոտ Պետոն ու Առաքիլի Պարգևը գնում էին թևանցուկ, իսկ Ցնդած Գեղանույշն իր աշակերտների հետ շրջապատել էր տարին տասներկու ամիս հղի Օրիորդ Սաթենիկին և, ամենքը լոզունգի մի-մի ծայրից բռնած, երգելով գնում էին նրանց ետևից:

Անհավատալի էր. օրը դեռ չէր սկըսվել, բայց Վահանն արդեն զարմանում էր երկրորդ անգամ. ի՞նչ ընդհանուր բան կա այս մարդկանց միջև. ուրիշ ժամանակ իրար փոր են թափում, հիմա միացել են, միավորվել, բան ու գործ թողած, թև-թևի, ուս-ուսի ճամփա են ելել, ասես հազար տարվա քույր ու եղբայր են, հազար տարվա դաշնակիցներ:

Վահանի զարմանքը ոչ ոք չտեսավ: Մարդիկ, առհասարակ, վաղուց չէին նըկատում նրան: Փոխադարձ հրաժարումի նման մի բան էր կատարվել նրա և մյուսների միջև. նրանք միմյանց համար գոյություն չունեին, չկային: Վահանն արագորեն անցավ դեպի քաղաք շտապող բազմության կողքով: Ոչ ոք չնկատեց նըրան: Միայն քարակույտին կանգնած տըղան ակնապիշ ուղեկցեց Վահանին:

Առավոտյան սուրճը չկարողացավ խըմել. սրճարանը փակ էր: Դռան վրա մանկան անվարժ ձեռագրով ինչ-որ անհեթեթ, անմիտ բան էր գրված. «Բոլորը գնացել են ռազմաճակատ»: Վահանն հայհոյեց ու մտավ գրասենյակ: Մռայլ նայեց անկյունում բչփչացող հավաքարարին ու ցրիչին: Առաջներում մի հայացքը բավական էր, որ նրանք պապանձվեին և արագորեն գործի անցնեին: Սակայն օրը Վահանին անհասկանալի ընդվզումով էր լեցուն. ցրիչը մարտահրավերն ընդունողի նման հայացքը գամեց Վահանի աչքերին: Վահանն ինքն իրեն մռլտաց, հագավ թևնոցներն ու գործի անցավ:

Անկյունի բչփչոցը վերսկսվեց ու շարունակվեց ողջ օրը: Վահանին խոսքի պատառիկներ էին հասնում. Ղարաբաղ, մարզային խորհուրդ, սեսիա, վերամիավորում, ցույց, գործադուլ, միլիոն մարդ, սահմանադրություն, արդարություն, վերակառուցում, Խորհրդային Միություն, աշխարհ, մարդկություն, հայ ժողովուրդ և այլն:

Ողջ օրը Վահանն ասես փշերի վրա լինէր. իր գրասենյակում իրեն ավելորդ էր զգում: Գլուխը կախ ապրելը նրան սովորեցրել էր նույնիսկ ծոծրակով տեսնել, թե ինչ է կատարվում իր թիկունքում: Եվ հիմա զգում էր, որ աշխատանքի եկած հատուկենտ գործընկերները խուսափում են իրենից: Ճիշտ է, դա նրա համար սովորական բան էր. Վահանը երբեք որևէ մեկի կարիքը չէր զգացել: Սակայն այսօրվա վերաբերմունքն այլ էր. արհամարհանք կար օդում, և Վահանը ծակոտիներով զգում էր այդ: Զգում էր ու չարանում. էլի խելագարվել են սրանք, էլի խաբվել են, անցավ գլուխները ցավի տակ են դըրել: Փորձանք են բերելու էս ազգի գըլխին, փորձանք: Ու դեռ իր նման սթափ մտածողներին էլ արհամարհում են: Էհ, հասկացողին մեկ ասա, չհասկացողին՝ հազար ու մեկ, միևնույն է, էլի իր էշն է քշելու: Դհոլի ձեն է ընկել ականջները, կարծում են հարսանիք է: Ոնց չէ, ախորժակներդ քացախ: Էնպես տան գլխներիդ, որ տասնհինգ թիվը մոռանաք: «Ութ օր, որ ցնցեց աշխարհը»: Թան էլ չէ՝ բրդած մածուն: Էսքան էլ անխելք ժողովուրդ կլինի: Գնացեք՝ ազգովի կործանվեք:

Օրը մի կերպ ավարտվեց: Տունդարձի ճանապարհն ամայի էր: Միայն փոքրիկ տղան էր կանգնած քարակույտի գլխին:

Վահանը տուն հասավ, մռայլ նայեց շեմքին կանգնած կնոջը, ուսով նրան հըրելով ներս մտավ, սկսեց լվացվել: Օճառըն անընդհատ սահում էր նրա ափերի միջից, ընկնում հատակին: Վահանն հայհոյեց ու անցավ խոհանոց:

Կերակրափողը խցանվել էր: Պատառը կուլ տալու համար Վահանը դույլերով ջուր էր խմում: Ջուրն էլ ջուր լինէր. Արագածի ջրի մեջ էլ համ չի մնացել. ոչ ջուրն է ջուր, ոչ հացն է հաց, ոչ կյանքն է կյանք. սրանք էլ մյուս կողմից. ի՞նչ եք ուզում, այ մարդ, թողեք մի կերպ գըլրենք էս անտեր կյանքը, մինչև սատկենք, պրծնենք, հոգիներս ազատվի: Չէ, բզում են, հա բզում, ոչ կարողանում են հանգիստ մնալ, ոչ թողնում են ուրիշը հանգիստ մնա, թու ես ձեր... Վահանը մի կողմ հրեց ափսեն, մտավ սենյակ, միացրեց հեռուստացույցն ու պառկեց բազմոցին: Լրաբերն էր. սովորականի նման գորշ, անհրապույր, անհետաքրքիր. այտեղ ցանեցին, այնտեղ հնձեցին, այսքան

տոկոսով գերակատարեցին և այլն, և այլը: Սրանց որ հավատաս՝ դրախտում ենք ապրում, ոչ դարդ ունենք, ոչ ցավ, մնում է ուրախությունից գլուխկոնծի տալ:

Վահանն հորանջեց ու աչքերը փակեց: Եվ հանկարծ հեռուստացույցի էկրանին տեսավ իրեն. մեքենան սլանում էր լերկ լեռան շուրջը պտտվող ճանապարհով, լեռան լանջերն հեղեղված էին մարդկանճանկռոտված, քերծված ու արյունակոլոլ, մի կերպ դուրս պրծնում մացառուտների ճիրաններից, շալակում ծվատված, ճըղճըղված պարկերն ու կրկին մագլցում լեռըն ի վեր, կրկին հարված ստանում ձեռքերին, գահավիժում և կրկին ու կրկին մագլցում դեպի գագաթ: Անվախճան ու անսկիզբ չարչարանքի մատնված, նրանք փորձում էին պարկերն հասցնել լեռան



ցով, որոնք պարկերը շալակած մագլցում էին լեռն ի վեր: Լեռան գագաթին ցատկոտում էր վիթխարահասակ, կարմիր թիկնոցով սև մի մարդ ու քրքջալով կանչում էր նրանց: Ու երբ մարդիկ, վերջապես հաղթահարելով զառիվայրը, փորձում էին բարձրանալ լեռան գագաթ, մարդն այն հարձակվում էր նրանց վրա, կրունկով խփում ու խփում նրանց ձեռքերին ու վայր գլորում: Մարդիկ գահավիժում էին, խրվում մացառուտների մեջ, գագաթ: Իսկ պարկերն արդեն քրքրվել, բզիկ-բզիկ էին եղել, օդում թևածում էր պարկերից դուրս պրծած մագաղաթների, փաստաթղթերի, գրքերի, թղթե շերեփների ամպը, մարդիկ քար ու խիճի հետ ճանկռում էին լանջերին սփռված թղթերն ու աղաղակով պարզում դեպի մարդըն այն վիթխարահասակ, իսկ նա քրքըջալով ցատկոտում էր լեռան գագաթին ու ծաղրանքով շարունակ կանչում էր դեպի վեր, դեպի գագաթ:

Վահանը խելահեղ արագությամբ սըլանում էր լեռան ստորոտով ձգվող ճանապարհով, որը ոչ վերջ ուներ, ոչ ըսկիզբ, փակ շրջան էր, որից դուրս գալն անհնար էր: Արդեն միլիոն անգամ անցել էր այդ ճանապարհը: Լեռան գագաթը չհասնելու հավերժական չարչարանքին դատապարտված մարդկանց նման Վահանն էլ դատապարտված էր ոչ մի տեղ չտանող ճանապարհով անվերջ պտտվելու:

Սակայն լեռան գագաթի մարդը վերջապես նկատեց Վահանին և ձեռքի հըրամայական շարժումով կանչեց նրան: Վահանը կտրուկ թեքեց ղեկն ու սովորականի նման, չնկատելով և չնկատվելով, մագլցող ու գահավիժող մարդկանց կողքով սլացավ լանջն ի վեր, հասավ գագաթին, իջավ մեքենայից, անիվների տակ քար դրեց և դռները փակելով, գնաց դեպի վիթխարահասակ մարդը: Մոտենալով նրան, Վահանը զարմանքով տեսավ, որ մարդն այդ բնավ վիթխարահասակ չէ. գաճաճ ու ծուռտիկ մի արարած էր նա և շնչում էր ծանր ու ուժասպառ: Նրա թիկնոցի ստվերը ծածանվում էր լեռան լանջերին, և դա էր նրան թվացյալ վիթխարիություն հաղորդում:

— Օգնիր,— ճակատի քրտինքը սրբելով, խռխռան ձայնով կարգադրեց նա,— անիծյալները շատ են ու համառ:

Կամազրկող, ստրկացնող շունչ կար նրա ձայնի մեջ, և Վահանը ցատկեց դեպի ժայռի եզրն ու սկսեց կրունկներով հարվածել գագաթ բարձրացող մարդկանց ձեռքերին:

Լեռան գագաթ մագլցողները առավոտվա ցուցարարներն էին: Ուրիշ շատ ծանոթ և անծանոթ մարդիկ էլ կային, բայց հենց առաջին մարդուն գլորեց, տեսավ, որ նա Հովիկն է՝ իր որդին:

Վահանն աղեկտուր ճչաց և նետվեց նրա ետևից:

— Գործիդ նայիր,— չարագուշակ փըշշաց սև մարդը: Եվ նրա դիվային զորությանը հնազանդ, իր կամքին հակառակ, Վահանը շարունակեց հարվածներ տեղալ մագլցողների ձեռքերին: Եվ ում ցած էր գլորում, ահաբեկված տեսնում էր, որ դա Հովիկն է՝ իր որդին. ինքը ոչնչացնում էր իր որդուն:

Ողջ գիշեր Վահանը ցատկոտում էր լեռան լանջին ու որդուն ցած գլորում:

Առավոտյան արթնացավ հոգնած ու ջարդված, սրտում՝ մաղձ ու լեղի:

— Տղեդ ո՞ւր է,— կնոջ վրայից վերմակը քաշելով, խուլ հարցրեց նա:

— Քաղաք գնաց,— վախեցած պատասխանեց քնաթաթախ կինը:

— Քաղա՞ք: Փլավ են բաժանում հա՞, իսկ շերեփ վերցրե՞ց հետը, շերեփ:

— Չէ, այ մարդ, ինչ շերեփ, ինչ բան, անձնագիրը վերցրեց ու գնաց:

— Անձնագիր չէ, թղթե շերեփ է վերցրել տղեդ, խելքի պուտուկ, թղթե շերեփի ասպետ է տղեդ: Բան ու գործ թողած, խելքը քամուն է տվել: Ես քեզ տղա ասողի...— Մռլտաց Վահանն ու սկսեց հագնըվել:

Այս անգամ ճանապարհն ավելի մարդաշատ էր: Լոզունգները ծածանելով դեպի քաղաք էին շտապում շրջակայքի գըրեթե բոլոր բնակիչները: Վահանն արագորեն անցավ նրանց կողքով: Ոչ ոք չնըկատեց նրան: Միայն քարակույտին թառած տղան զարմացած հայացքով ուղեկցեց Վահանին:

Գործատեղում մարդ չկար: Վահանն ամբողջ օրը մենակ էր: Անշարժ ու մռայլ գամվել էր աթոռին, ոչինչ չէր անում, անթարթ նայում էր ժամացույցին: Տեղից ելավ միայն այն ժամանակ, երբ աշխատանքային օրն ավարտվեց: Նստեց մեքենան և սլացավ դեպի տուն: Ճանապարհն ամայի էր: Միայն փոքրիկ տղան էր դեռ ցցված քարակույտի գլխին:

Վահանը տուն հասավ, մռայլ անցավ շեմքին կանգնած կնոջ կողքով, մտավ խոհանոց: Ուզեց հաց ուտել, չկարողացավ: Մտավ ննջարան, վերմակը քաշեց գլխին և... հայտնվեց լերկ լեռան գագաթին:

... Ծղնված պարկերը շալակած, լանջըն ի վեր մագլցում էին ցուցարարները: Որպես հավաքական Սիզիփոս, որպես հավերժական Սիզիփոս՝ դեպի լեռան գագաթ էր ձգտում մի ողջ ժողովուրդ: Մագլցում էր, հարված ստանում, գահավիժում և կրկին ու կրկին ձգտում դեպի գագաթ, ուր մոլեգնում էր վիթխարահասակ գաճաճը: Նրա կողքին, նրա շարժումները կրկնելով, ցատկոտում էր Վահանն ու պայտած կրունկներով ճխլում մագլցողների ձեռքերը, ճխլում էր, ցած գլորում ու տեսնում, որ խփել-գլորել է իր որդուն՝ Հովիկին: Ուզում էր վազել նրա ետևից, բռնել, բարձրացնել, սակայն կամազուրկ և անզոր, սև մարդու դիվային ուժին հընազանդ, շարունակում էր ցատկոտել, հարվածներ տեղալ աջ ու ձախ և որդուն

վայր գլորել։

— Հովիկն ո՞ւր է,— ցավից պայթող գլուխը մի կերպ բարձից կտրելով, աչքերը բացելուն պես հարցրեց Վահանը։

— Տուն չի եկել,— անքնությունից ուռած աչքերը թարթելով, լացակումած պատասխանեց կինը։ Հարսն ու կինը կուչ էին եկել թախտին։ Կինը գրկել էր հեծկլտացող հարսի ուսերն ու լուռ արտասվում էր։

— Լավ, լավ, մի նվնվացեք,— փնթփնթաց Վահանն ու սկսեց հագնվել։

Ճանապարհն ամայի էր։ Միայն փոքրիկ տղան էր կանգնած քարակույտի գլխին։ Երբ Վահանը հավասարվեց նրան, տղան հանկարծ առաջացավ և բարձրացրեց ձեռքը։ Վահանը կանգնեց։ Տղան անշտապ մոտեցավ, բացեց առջևի դռնակն ու նստեց։

—Բարև, քեռի,—տեղավորվելով ասաց նա։

— Բարև,— տղային զննելով պատասխանեց Վահանը։

Նա մոտ տասը տարեկան էր, խանձված, գանգուր մազեր ուներ, մի տեսակ տխուր, ամուր սեղմած շուրթեր և զարմանալիորեն մտախոհ, անթարթ հայացք։

— Մի քիչ կամաց քշիր, քեռի,— հանկարծ խնդրեց տղան։



Վահանը նվազեցրեց արագությունն ու հարցրեց.

— Անունդ ի՞նչ է։

— Մհեր,— անտրամադիր պատասխանեց տղան։

— Որ մեծանաս, ի՞նչ պիտի դառնաս,— փորձեց խոսակցությունը շարունակել Վահանը։

—Փոքր Մհեր,— պատասխանեց տղան։

Վահանն ընդոստ նայեց նրան։ Տղան նստած էր հանգիստ, անխռով, հեգնանքի

նշույլ անգամ չկար դեմքին:

— Ագռավի քարը քեզ նվեր,— դիմացինի տարիքը մոռանալով, զայրացած գոռաց Վահանը:— Քեզ նման հազարները փտեն, մեկ է, օգուտ չունի, մի անգամ փակվել է ու վերջ. ոչ բացվել է, ոչ էլ բացվելու է: Հույս չունենաք: Խելքի արի, մեղք ես:

Տղան ծուռ-ծուռ նայեց Վահանին և ձեռքի լուսանկարը պարզեց նրան:

— Եղբայրս է նկարել,— ասաց նա:— Եվ ձայնի մեջ հպարտություն կար:

Վահանը վերցրեց լուսանկարը. մարդկային ծով բազմություն էր, անթիվ, անհամար մարդիկ, բռունցքված ձեռքերը վեր պարզած, աչքերը հառել էին ինչ-որ անորոշ, անտեսանելի բանի և նայում էին հույսով, հավատով, սպասումով:

— Ի՞նչ նկար է,— հարցրեց Վահանը:

— Ցուցարարներ են, քեռի:

— Եվ ի՞նչ են ուզում:

— Չեն ուզում, քեռի, պահանջում են:

— Լավ, թող պահանջեն: Ի՞նչ են պահանջում: Չլինի՞ հող:

— Չէ քեռի, հող չեն պահանջում, արդարություն են պահանջում:

— Արդարությո՞ւն,— հեգնեց Վահանը,— ումի՞ց են պահանջում: Չլինի՞ քարերից:

— Աշխարհից, քեռի, աշխարհից:

— Էհ, հասա՞ն իրենց ուզածին:

— Մի օր չէ, մի օր կհասնեն: Նրանք չհասնեն, մենք կհասնենք:

— Դո՞ւ: Իսկ դու գիտե՞ս, թե ինչ է արդարությունը:

— Գիտեմ, քեռի, ձնծաղիկի նման մի բան է, ճերմակ ու սիրուն:

Վահանը կատաղած շրջվեց դեպի տղան:

— Այ տղա, դու ի՞նձ ես ձեռ առնում, թե՞ քեզ: Ի՞նչ ես ծակ փիլիսոփայի նման դուրս տալիս:

—Չէ քեռի, ձեռ չեմ առնում: Ծակ փիլիսոփան էլ դու ես: Ես Մհերն եմ,— անվրդով պատասխանեց տղան, ապա ասաց,— կանգնիր, քեռի:

Վահանն արգելակեց: Տղան իջավ մեքենայից և առանց հրաժեշտ տալու խորացավ քարերի մեջ:

— Այ տղա, հո չնեղացա՞ր,— կանչեց Վահանը,— էդ քարերի մեջ ի՞նչ ես կորցրել:

— Չէ քեռի, քեզանից ի՞նչ նեղանամ: Քարերի տակ ձնծաղիկներ են աճում, գնում եմ քաղեմ:

Վահանը մի պահ նայեց տղայի ետևից, ապա ձեռքը թափ տվեց ու քշեց մեքենան:

Գործատեղում դարձյալ մարդ չկար: Վահանը նստեց գրասեղանի առջև, գլուխը առավ ափերի մեջ ու աչքերն հառեց կրիայի պես սողացող վայրկյանացույցին և հանկարծ կրկին հայտնվեց լերկ լեռան գագաթին:

Լեռան լանջն ի վեր կրկին մագլցում էին անթիվ, անհամար մարդիկ: Սակայն ուշադիր նայելով, Վահանը սարսափեց. նրանք բոլորը միևնույն դիմագծերն ունեին. բոլորը մի մարդ էին. և դա Հովիկն էր:

Վահանն ուզեց պարզել ձեռքը, ուզեց Հովիկին օգնել, սակայն իր կամքին հակառակ՝ պայտած ոտքով խփեց իրեն պարզած ձեռքին: Հովիկը ցած գլորվեց: Նրա մեջքին սեղմած պարկից թափվեցին գրքեր, փաստաթղթեր և... Վահանի հոր դիակն ու մանկան բարուր: Դիակը ու բարուրը գլորվում էին լեռն ի վար: Վահանը ոռնաց ցավից և հարձակվեց սև մարդու վրա:

— Սիզի-Փիսի, դեվե հրա պարկ,—կեռ մատները չանչ անելով՝ կռնչաց մարդն, ու Վահանը հայտնվեց հզոր պտուտահողմի գրկում, ցած շպրտվեց լեռան գագաթից, նրա մեջքին սեղմած պարկից թափվեցին գրքեր, փաստաթղթեր, թղթե շերեփներ:

Վահանը վեր թռավ տեղից և դուրս վազեց: Նստեց մեքենան, կտրուկ պոկվեց տեղից և սլացավ դեպի քաղաք:

Երբ հասավ այնտեղ, ուր իջեցրել էր Մհերին, նվազեցրեց արագությունն ու սկսեց զննել շուրջը: Մհերը քայլում էր ճամփեզրով:

Վահանն արգելակեց ու կանչեց.

— Մհեր:

Մհերը կանգ առավ ու սպասողական նայեց Վահանին:

— Մհեր, արի գնանք քաղաք:

Մհերը վազելով մոտեցավ, նստեց, ապա ձեռքի ծաղկեփնջից մի ձնծաղիկ ընտրելով, պարզեց Վահանին:

— Վերցրու, քեռի:

Ձնծաղիկի մեղմ բուրմունքը խուտուտ տվեց Վահանի աչքերը: Նա ձնծաղիկն ամրացրեց պահապան խաչի կողքին և գործի գցեց շարժիչը:

— Գնացինք, քեռի,— հավաստելու պես ասաց Մհերը: Մեքենան սլացավ դեպի քաղաք:

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

## Լեռան սիրտը

Թմբուկ չէ՝ լեռան սիրտն է բաբախում:
Մարդիկ չեն՝ լեռն է շտկվում վերստին,
Եվ ներդաշնակ են խոհ ու զգացում,
Միտքը մտքին է ու սիրտը սրտին:

Օրեր, ամիսներ, տարիներ, դարեր,
Փափագը նույնն է՝ հին, թե նորագույն:
Սարերի կողքին կանգնում են սարեր
Եվ ասպետների թիկնոց են հագնում:

Ուսը ուսին է հենվում մեկուսի,
Լույսը լույսին է հուսով սատարում,
Նեցուկ է դառնում մեկը մյուսին
Մեր ամենասև ու պայծառ տարում:

Մոտ է, մոտիկ է շունչը բարեբեր,
Հունձերն առատ են, դաշտերը բերրի,
Ով որ իր հույսն է կապում վաղվա հետ
Գեղջուկի նման պիտի համբերի...

Բարձրանում են վեր,
Հավաքվում խումբ-խումբ,
Մարդիկ չեն՝ լեռն է շտկվում վերստին,
Եվ ներդաշնակ են խոհ ու զգացում.
Միտքը մտքին է ու սիրտը սրտին:

## Երգերդ նախկին

Երգերդ նախկին պետք չեն այլևս,
Ինչպես գոփյունը ձմեռվա կեսին:
Եթե երգերդ բերդ չեն ու պատնեշ,
Պակասավոր են ուրեմն նրանք...

Երգերդ նախկին պետք չեն այլևս,
Ինչպես պճնանքը վշտացյալներին:
Եթե երգերդ շեփոր չեն մարտի,
Պակասավոր են ուրեմն նրանք...

Պակասավո՛ր են,
Անպատա՛կ են,
Իմաստազո՛ւրկ են,
Ժ ա մ ա ն ա կ ա խ ո՛ ւ յ ս...
Թե զինվորներ չեն, զենք չեն երգերդ
Ու խարույկներ չեն վառվող մինչև լույս:

## Հայոց լեզուն

Հայոց լեզուն,
Հայոց լեզուն
Հայոց ոգու պես հայկազուն
Մեր սարերին,
Մեր հանդերին,
Մեր շուրթերին է լոկ սազում:

## Անմահ հույսեր

Տղային մի արհամարհեք՝
Զինվորն է վաղվա:
Աղջկան մի վիրավորեք՝
Մայր է դառնալու:
Հայրենիքի աչքերում
Նրանք հույսեր են անմահ,
Ո՛վ գիտի՝ ում անվամբ ենք
Հպարտանալու...

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՊԱՏՄՈՒՄ Է

## ԱՐՇԱԼՈՒՅՍԻ ԿԱՄՈՒՐՋ

Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Ասկերանի շրջանի Քյոսալար գյուղի մոտ կա մի հնավայր, որ կոչվում է Արշալույսի կամուրջ: Մ. թ. ա. առաջին դարում կիրճի վրա կառուցվել է շարժական կամուրջ, որն ուներ գեղաքանդակ կամրջախելեր: Կամուրջը բացվում էր արշալույսին և օրը լույս դառնալուց հետո՝ փակվում: Այնպես որ՝ մարդիկ կարող էին այդ կամրջով անցնել միայն լուսաբացին: Կառուցողն ու կամրջի տերը արևապաշտ մի քուրմ էր, որն ամեն օր նույն մաղթանքն էր անում. «Մշտավառ մնա քո լույսը, Արեգ, իրավ է՝ դու անձեռնհաս ու շատ հեռու ես ինձնից, բայց քո ճառագայթներով է բաբախում իմ հոգու արշալույսը»: Կամուրջը կործանվել է 4-րդ դարի սկզբներին, Հայաստանում քրիստոնեություն տարածելու ժամանակ: Մինչև 1950-ական թվականները դեռ մնում էին կամրջախելերի մնացորդները:

Արշալույսի կամրջի հետ է կապված և հեթանոսական ժամանակներից է գալիս Արցախում պահպանված հետևյալ առածը. «Ուշ վերկացողը Արշալույսի կամըրջով չի անցնի»:

Հրաչյա Աճառյանը **արշալույս** բառի արմատը արտածում է արջալուրջք բառից, որ կազմված է արջ (սև) և լուրջ (կապույտ) բառերից: Այսպիսով՝ բառի իմաստը նույնանում է արդի ժողովրդական **մութնլուսուն** ձևի հետ. արշալույսը այն ժամանակն է, երբ երկնքի մի մասը կապտում է, իսկ մի մասը դեռևս մութ է, սև:

## ԳԵՏԱՇԵՆ

Խանլարի շրջանի հայկական այս հնամենի գյուղը վերջին մեկուկես տարում ցույց տվեց իր դյուցազնական դեմքը, հետ մղեց ադրբեջանցի ազգայնամոլների գրոհները, սրահեց իր ինքնությունը և իրեն համարեց Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի մեջ մտած: 1989 թվականի մարդահամարի տվյալներով ունի 3500 հայ բնակիչ: Գյուղում գործում են մեկ միջնակարգ և մեկ ութամյա հայկական դպրոցներ:

Գետաշենում և շրջակա գյուղերում ուշ միջնադարում իշխում էր Մելիք Մնացականյանների տոհմը: Մինչև այժմ էլ Գետաշենում դեռ կանգուն է նրանց ապարանքը:

Գետաշենը գտնվում է մի խոր ձորում, որի միջով հոսում է Կուրակ գետը: Ձորն ամբողջովին ծածկված է այգիներով: Գյուղի տները հիմնականում գտնվում են ձորի արևելահայաց լանջին, իսկ արևմըտահայաց լանջին պահպանվում են հին հնձանների ավերակները: Գյուղի կենտրոնում է Սուրբ Աստվածածին եկեղեցին: Գետաշենի շրջակայքում կան բազմաթիվ գեղաքանդակ խաչքարեր: Գյուղից դեպի հարավ-արևելք, մի լեռնաբազկի վրա, Եղնասարի վանքն է, որ կոչվում է Եղիշե առաքյալի անունով: Գյուղի ներքևում Ավագ Սուրբ Նշան մատուռն է, վերևում՝ մի փոքրիկ եկեղեցի:

Գետաշենի մոտի Քաջքաձորում կա մի աhագին ժայռ, մեջը՝ մի ծակ՝ Քաջքատուն անունով: Սա, ինչպես նաև Ավագ Սուրբ Նշան մատուռը, գետաշենցիների սրբավայր-ուխտատեղին է:

## ԳՅՈՒԼԻՍՏԱՆ

Գյուլիստան կամ Վարդուտ գյուղը գտնվում է Արցախի Շահումյանի շրջանում: 1989 թվականի մարդահամարի տվյալներով գյուղն ունի 726 հայ բնակիչ: Գյուղում գործում է հայկական միջնակարգ դպրոց:

Գյուղից հարավ, Բարակ գետի աջ ափին, ժայռաբլրի վրա, Գյուլիստանի բերդըն է, որը 17-րդ դարից եղել է Գյուլիստանի մելիքության նստավայրը:

Այս գյուղում 1813 թվականի հոկտեմբերի 24-ին (նոյեմբերի 5-ին) Ռուսաստանի և Պարսկաստանի միջև ստորագրվել է Գյուլիստանի հաշտության պայմանագիրը, որով Ռուսաստանին են անցել Դաղստանը, Վրաստանը, Մեգրելիան, Իմերեթիան, Գուրիան, Աբխազիան, Բաքվի, Ղարաբաղի, Գյանջայի, Շիրվանի, Ղուբայի, Դերբենդի ու Թալիշի խանությունները, Լոռու, Ղազախի, Շամշադինի, Իջևանի, Շիրակի և Զանգեզուրի շրջանները:

Գյուղը մինչև 15-րդ դարը կոչվել է Վարդուտ: Գյուղի եկեղեցին կառուցվել է 1817 թվականին:

## Հրավեր

Տեսեք աղավնին Նոյյան տապանին,
Եկած ու կանգնած ի սար Տավրոսին՝
Ավետիս կու տա Հայկյան սերունդին,
Թե եկավ գարուն Թորգոմա զարմին:

Արթնցե՛ք, հայեր, քաջաց զավակներ,
Առեք միության տեգ ու նիզակներ,
Ծուտով կազմեցեք սիրո խմբակներ,
Առեք քաջության զենք ու զրահներ:

Հինգ հարյուրամյա մի քուն քնացանք,
Ջաստված ու զեղբայր ի սպառ մոռացանք,
Սիրո, միության լաթեր մերկացանք,
Ատելության ձեռք խաղալիք դարձանք:

Մոռցանք հայրենիք, մոռցանք Հայաստան,
Կորուսինք մեր փառքն ու Արմենիստան,
Մաս մը Ռուսաստան, մասը մը
Պարսկաստան,
Մնացինք թշվառ, անտեր, անպաշտպան:

Երկինք բարկացավ, հայրենիք լացավ,
Մեր ջուրն ու գինին մեզ արյուն դարձավ,
Խաչյալն Հիսուս մեզի մոռացավ,
Հայերուն բաժին մնաց սուգ ու ցավ:

Այսչափ քնանալ մեզի հերիք է,
Թմրիլն ու պառկիլ խիստ մեծ չարիք է.
Սիրելն ու սիրվիլ արդեն բարիք է,
Ձեռք տանք իրարու քանի ուշը չէ:

Եկե՛ք միանանք, բանանք դպրոցներ,
Մեր մատաղ մանկանց համար վարժոցներ,
Վառե՛նք, բորբոքենք սիրո հնոցներ,
Մեր սառած սրտին ըլլան հալոցներ:

Ծուխի պես անցան այս հինգ մեծ դարեր,
Լացին հայրենյաց դաշտեր ու սարեր,
Հերիք ալ ձեզի, հերիք է վատեր,
Հերի՛ք մեր բաժին արցունք ու ախեր:

## Երգ Գևորգ Չաուշի հիշատակին

Հազար ինն հարյուր յոթ թվականին,
Չքնաղ Մայիսի քսան և յոթին,
Տոն է բազմաշխատ մահվան Գևորգին,
Սասնո հարազատ մեծանուն քաջին:

Թնդաց սրտերը տասնյակ քաջերուն,
Կովեցան անվերջ, մինչև իրիկուն,
Իսկ, երբ գիշերեց՝ Գևորգը շալկած,
Գյուղեն դուրս ելան և գացին տրտմած:

Ժամփան աղաչեց քաջն մահամերձ,
Հանգիստ ձգեք զիս, մի ըներ շնչահեղձ,
Դրեք զիս այստեղ, ծածկեք խոտերով,
Գացեք ընկերներ, դուք գացեք բարով:

Վերջին բարևներս տարեք հայ ազգին,
Վերջին համբույրներս՝ որդիս Վարդգեսին:
Լացին ընկերներ, մոտեցան կարգով,
Համբուրեցին զինք ու անցան խմբով:

Նայեց բոլորտիք, ա՛լ չկար ընկեր,
Ընկած կովի դաշտ, տառապեր անտեր,
Համբուրեց հողը քաղցր հայրենյաց,
Փակեց աչքերը ներքևն աստեղաց:

Հանգիստ, փրկություն իր սուրբ ոսկերաց,
Պատվավոր հարգի անունդ անմոռաց,
Ձայն ալ միշտ պիտի տոնե դարեդար
Ազնիվ Գևորգի տոնը անդադար:

## Անդրանիկին

Իբրև արծիվ սավառնում ես լեռ ու ժայռ,
Թնդացնում ես երկինք-գետին տենչավառ,
Սուրբ անունդ պիտի հիշվի դարեդար,
Հսկա լերինք քեզ ապաստան, Անդրանիկ:

Թշնամիներդ երբ լսեն քո անունը,
Օձերի պես պիտ սողան իրենց բույնը,
Երակներիդ ազնիվ քաջի արյունը
Չցամաքե մինչ հավիտյան, Անդրանիկ:

Հայոց կուսանք դափնեպսակ թող հյուսեն,
Քնքուշ ձեռամբ քո ճակատը պսակեն,
Գոհարներով անվախ կուրծքդ զարդարեն,
Կեցցե՛ս հավետ դու անսասան, Անդրանիկ:

Հայաստանի սոխակները քեզ համար
Թող դայլայլեն գիշեր-ցերեկ անդադար,
Անհաղթ մնաս, դու քաջ կովի սիրահար,
Հայրենիքի տեր ու պաշտպան, Անդրանիկ:

## Տալվորիկ

Տալվորիկի զավակ եմ դորդ,
Քաղքցու պես չեմ թուլամորթ.
Սարի զավակ, քարի որդի,
Հին քաջ հայոց եմ մնացորդ:

Տալվորիկի զավակ եմ քաջ,
Չեմ խոնարհիր վատին առաջ,
Քարոտ լերանց եմ ազատ լաճ,
Չեմ տեսեր ոչ արոր, ոչ մաճ:

Հայ աղբրտիք, ջան աղբրտիք,
Տալվորիկի զավակ եմ քաջ,
Ազատության սիրույն համար
Եկեք դեպ ինձ, հառա՜ջ, հառա՜ջ:

Երբ իմ աչեր բացի աշխարհ,
Ազատ տեսա մեր սար ու քար.
Մինչև փակեմ աչքս ի խավար,
Պիտ չկոխե հոս ոտք օտար:

Իմ մամ ծնավ զիս պալու ծոց,
Ընկուզգի կոճղ՚ մ եղավ օրոց,
Տկլոզ ծնած՝ մեծցա տկլոզ,
Կյանքիս բաժինն է կռիվ ու բոց:

Հայ աղբրտիք, ջան աղբրտիք,
Տալվորիկի զավակ եմ քաջ,
Ազատության սիրույն համար
Եկեք դեպ ինձ, հառա՜ջ, հառա՜ջ:

## Հերոս Անդրանիկին

Հերոս մռնչաց, Սուլթան դողդողաց,
Վիլհելմի աչքից արտասուք ցոլաց,
Սուրդ թշնամու կրծքին շողշողաց,
Հայոց ղեկավար հերո՛ս Անդրանիկ:

Քեզ համար պետք է կատարենք մաղթանք,
Անգութ թշնամուն ցույց տվող տանջանք,
Դուն պետք է լինես մեր փառքն ու
պարծանք,
Քաջ գործակատար, հերոս Անդրանիկ:

Պարզե դրոշակ՝ տեսնե Եվրոպա,
Թող բացականչե՝ կեցցե Հայաստան,
Կեցցես դուն հավետ, հերոս հայկական,
Հայոց ղեկավար, հերոս Անդրանիկ:

Դուն պետք է փրկես ամբողջ Հայաստան,
Կարին և Սասուն, մայրաքաղաք Վան,
Տիգրանակերտից մինչև Ծավարշան,
Տիրեց մեզ համար հերոս Անդրանիկ:

## Աղբյուր Սերոբին

Գնդակ որոտաց նոյեմբեր ամսուն,
Պաշարված ենք մենք, իմ սիրուն Սոսե,
Վեր առ մոսինիդ, քաջությունը հոս է,
Սիրած Սերոբիդ օրհնյալ օրն այս է:

Ձայն տվավ Սոսեն, Սերոբ ջան հոս եմ,
Զինված, պատրաստված ձայնիդ կսպասեմ:
Քեզ հետ կռվելու, քեզ հետ մեռնելու
Ամեն օր ու ժամ պատրաստ է Սոսեն:

Իսկ քո Սերոբը, կյանքիդ հատորը,
Արյունով ներկեց Տալվորիկ ձորը,
Առյուծի նայվածքով նայում էր բոլորը,
Հաղթական կռվի մեջ էր ամբողջ օրը:

Ձայն տուր, Անդրանիկ, կենսատու ընկեր,
Արդյոք այս պահուս ո՞ր լեռն ես պառկեր,
Ոսկեթել մազերով երեսդ ես ծածկեր,
Հաղթական բազուկով մոսինդ ես գրկեր:

Հասի՛ր Անդրանիկ, հասի՛ր օգնության,
Սերոբ կզոհվի ի սեր ազգության,
Դեհ, հասիր, շուտ հասիր կտրիճ
խումբերով,
Սերոբ կը զոհվի իր զավակներով:




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ

ՈՒՂՂՈՒՄ

*Մեր ամսագրի 3-րդ համարի 19-րդ էջի ներքևի լուսանկարի մակագրությունը կարդալ՝ «Մեսրոպ Մաշտոցի թաղումը»։*

# Սահակ Պարթև

Հայոց պատմության մեջ երկու ամենապայծառ աստղերից մեկը Սահակ Պարթևն է։ Մյուսը՝ Մեսրոպ Մաշտոցը։

Սահակ Պարթևը ծնվել է 348 թվականին Կապադովկիայի Կեսարիա քաղաքում, որտեղ այդ ժամանակ սովորում էր նրա հայրը՝ Ներսեսը, և այնտեղ էր գտնըվում նաև նրա մայր Սահանդուխտը՝ Մամիկոնյան տան այդ օրերի նահապետ Վարդանի դուստրը։ Սահակը 2 տարեկան էր, երբ մայրը վախճանվեց, և նա ապրում էր մոր կողմից իր հարազատների՝ Մամիկոնյանների տոհմական տանը՝ Տարոնում։ Սահակը հոր օրինակին հետևելով, ուսում ստացավ այդ ժամանակ աշխարհի ուսումնական գլխավոր կենտրոններում՝ Կեսարիայում, Կոստանդնուպոլսում, Ալեքսանդրիայում։ Նա սովորեց լեզուներ և առաջնակարգ գիտեր հունարեն և հունական գրականություն։ Ղազար Փարպեցին գրում է. «Շատ հույն գիտնականների մոտ երկար ժամանակ մնաց ուսանելու համար։ Կատարելապես հմտացավ երգողական նշաններին, այսինքն՝ երաժշտական արվեստին, հռետորական հորդ ատենաբանությանը, մանավանդ՝ փիլիսոփայությանը»։ Հետո Սահակը հմտացավ նաև ասորերեն լեզվին, որը հունարենից հետո, Հայաստանի եկեղեցիների մի մասի լեզուն էր։ Նա լավ գիտեր նաև պարսկերեն, որը Հայաստանի արևելյան մասում պետական լեզու էր։

Սահակն ամուսնանում է և ունենում մեկ դուստր՝ Սահականույշը։ Սա էլ, ամուսնանալով Համազասպ Մամիկոնյանի հետ, հետո դարձավ Ավարայրի հերոս Վարդան Մամիկոնյանի մայրը։ Շուտով Սահակը թողնում է աշխարհիկ կյանքը, ընտանիքը և նվիրվում հոգևոր կյանքի։ Խորենացին նրա մասին գրում է. «Սա բոլոր առաքինություններով իր հայրերին նմանվեց՝ աղոթքի կողմից գերազանցելով։ Որովհետև նա հավաքեց 60 աշակերտ մայրաքաղաքի սպուդեների (փութաջան ճախաձեռնողների) նման կրոնավոր մարդիկ՝ մազեղեն հագած, երկաթով պատած, ոտաբոբիկ, որոնք միշտ շրջում էին նրա հետ, որոնցով եկեղեցական պաշտամունքի կանոնը անխափան կատարում էր անապատականների նըման»։

Այս վկայությունից երևում է, որ Սահակ Պարթևը դառնալով հոգևորական՝ իր աշակերտների հետ շատ ժուժկալ կյանք է վարել՝ նման ճգնավորների, որոնք կոշտ մազե զգեստ էին հագնում, ոտաբոբիկ ման գալիս, ընթերցանությամբ զբաղվում։ Ապա Սահակը ձեռնադրվում է եպիսկոպոս և պաշտոնավարում Վաղարշապատ մայրաքաղաքի Ս. Էջմիածին վանքում։ Նա իր աշակերտներին Աստվածաշնչի ուսմունքն էր սովորեցնում և տալիս հայրենիքին, հայ պետականությանը զորավիգ լինելու ոգի։

Խոսրով III թագավորին պետք էր այնպիսի մի կաթողիկոս, որ բացի Հայաստանի կրոնական առաջնորդը լինելուց, նաև նեցուկ լիներ իրեն՝ հայ. պետակա-

նությունը պահպանելու, Մեծ Հայքը վերամիավորելու և հայոց անկախությունը վերականգնելու գործում: Եվ նա ընտրեց Սահակ Պարթևին ու նրան ձեռնադրել տվեց հայոց կաթողիկոս 387 թվականին: Ընտրությունը ճիշտ էր, թեև շատ ուշացած...

Սահակ Պարթևը, ինչպես և Մեսրոպ Մաշտոցը զգում էին, որ Արշակունիների հայոց պետությունը գնում է դեպի անկում: Պետք էր մի միջոց, մի հենարան գտնել, որ իր ազգային պետականությունը կորցրած ժողովուրդը գոյատևի, մինչև որ նոր պետականություն ստեղծելու հնարավորություն առաջանա:

Այդպիսի հենարան կարող էր լինել Հայաստանի քրիստոնյա եկեղեցին և հայության ղեկավար՝ այդ եկեղեցու կաթողիկոսը: Բայց այդ եկեղեցին հայերեն չէր խոսում, հայերեն չէր գրում ու կարդում: Նրա լեզուն հունարենն էր ու ասորերենը: Հայ ժողովրդի համար ինչ հենարան կարող էր լինել օտարալեզու մի հիմնարկ, հայ ժողովրդի գոյության միակ փաստին՝ հայերենին, խորթ:

Ահա Սահակ Պարթևն էր Մաշտոցի հետ, որ միտք հղացավ հայացնել Հայաստանի եկեղեցին, այն դարձնել հայ ժողովրդի գոյատևման ու ազգային միասնության իրական հիմք:

Երբ պարսից արքունիքը Խոսրով III-ին գահընկեց արեց ու բանտարկեց Անհուշ բերդում, նրա նշանակած կաթողիկոսին էլ համարեց պաշտոնազուրկ:

Սահակ Պարթևը գնաց Տիզբոն: Պարսկաստանի մայրաքաղաքում նրան շատ շքեղ ընդունելություն ցույց տվեցին և հիացան նրա ճարտասանական բարձր արվեստով: Պարսից արքունիքում Սահակ Պարթևը ճանաչվեց իբրև հայոց եկեղեցու կաթողիկոս: Նրա մյուս բոլոր խնդրանքները նույնպես կատարեց Պարսկաստանի թագավորը: Ներում շնորհեց Կամսարական և Ամատունի նախարարական տներին, որոնց ներկայացուցիչները, ինչպես գիտենք, նախքան այդ պատերազմել էին պարսից զորքերի դեմ: Պարսից արքան Սահակի խնդրանքով ճանաչեց հայոց գահնամակը, որը, ինչպես հիշում ենք, հայ նախարարների հերթականությունն էր նշում՝ ըստ նրանց կարևորության, հայոց թագավորից հետո: Պարսից արքան Մամիկոնյան նախարարներին դրեց 5-րդ պատվավոր տեղում: Նա նաև Սահակ կաթողիկոսի փեսա Համազասպ Մամիկոնյանին հաստատեց հայոց սպարապետ:

Դրանից հետո՝ հաջորդ 15 տարիների ընթացքում Հայաստանում մեծ գործեր կատարվեցին՝ ստեղծվեցին հայոց տառեր, սկզբնավորվեց հայ գրականությունը: Այս ամենին Սահակ Պարթևը ամենագործուն մասնակցությունը ցուցաբերեց:

Սահակ Պարթևը զգում էր ոչ միայն, որ Արշակունիների հայոց պետությունը թուլանում է, որ հայ ժողովուրդը գնում է դեպի քաղաքական մասնատում, այլև այն, որ հայության առանձին հատվածները ընթանում էին դեպի օտարացում ու ձուլում: Նա լավ գիտեր նաև, որ հայ ժողովուրդը թեև անունով քրիստոնյա էր, բայց Քրիստոսի ուսմունքին և Աստվածաշնչին շատ քիչ էր ծանոթ, քանի որ այդ գիրքը հայերեն չկար: Այս ամենից Սահակ կաթողիկոսը եզրակացրեց, որ անհրաժեշտ է հայոց գիր ունենալ, որը հնարավորություն կտա հայերեն թարգմանելու Աստվածաշունչը, եկեղեցին հայացնելու ու դարձնելու հետագա դարերի համար հայոց հենարան, քաղաքականապես բաժան-բաժան եղած հայությանը միասնական դարձնելու քրիստոնեական կրոնով և ազգային գիր ու գրականությամբ:

Երբ Մեսրոպ Մաշտոցը նույն այս մտահոգություններով գալիս է Վաղարշապատ, կաթողիկոսի մոտ, Սահակ Պարթևն ասում է, որ ինքն էլ բավական ժամանակ դրա մասին է մտածում: Խորենացին գրում է. «Նրա մոտ եկավ Մեսրոպը հայերեն գրերի հարցի առթիվ և տեսավ, որ նա ավելի ևս փափագում է այդ բանին»:

Այնուհետև, հայ գրերի գյուտի խնդրում Սահակ Պարթևը ամեն կերպ հովանավորել է Մեսրոպ Մաշտոցին, օգնել է նրան: Ղազար Փարպեցին գրում է, որ Մաշտոցն իր հարցումներով Սահակ սուրբ կաթողիկոսից շատ բան էր սովորում՝ հնչյունների-գրերի գաղափարի վերաբերյալ»:

Փաստերը ցույց են տալիս նաև, որ Մաշտոցը իր ստեղծած այբուբենի վերջնական տեսքը, տառանվանումները, թըվային արժեքների որոշումը կատարել է Սահակ Պարթևի մասնակցությամբ:

Հայերեն գրագիտություն սովորող առաջին աշակերտները եղան Սահակ Պարթևը, նրա 60 և Մաշտոցի 40 աշա-

կերտները, որոնց մեծ մասը ուսուցիչ կարգվեց Հայաստանի տարբեր գավառներում, մի քանիսն էլ Սահակ կաթողիկոսի և Մաշտոցի ղեկավարությամբ լծվեցին Աստվածաշունչը թարգմանելու գործին: Այդ աշակերտները Սահակի և Մաշտոցի հետ միասին կոչվեցին թարգմանիչներ, նաև վերծանողներ, քանի որ նրանց մի գլխավոր գործը Աստվածաշունչը և այլ հոգևոր գրքեր հունարենից և ասորերենից վերծանելն էր և թարգմանելը:

Նորաստեղծ հայկական դպրոցները ենթարկվում էին հայոց եկեղեցուն: Սահակ կաթողիկոսը այդ ժամանակվանից Հայաստանի ամբողջ տարածքում՝ թե արևելյան, թե արևմտյան մասերում, նաև հայաբնակ այլ վայրերում, որոնց հոգևոր առաջնորդը նույնպես ինքն էր, խստիվ արգելեց հայ երեխաներին հաճախել հունական կամ ասորական դպրոց: Նրա նըշանաբանն էր. «Հայ երեխային և պատանուն միայն հայկական դպրոց»: Դըրանից հետո մինչև 19-րդ դարի սկզբները Մեծ Հայքի ամբողջ տարածքում հայ երեխաները հաճախել են միայն հայկական դպրոց:

Հայկական առաջին դպրոցներում դասավանդվող առարկաների ցուցակը, դասավանդման եղանակները Սահակն ու Մեսրոպը որոշում էին միասին, դպրոցներն ու ուսուցիչներին էլ ղեկավարում էին համատեղ:

Արշակունյաց Հայաստանի մայրաքաղաքը՝ Վաղարշապատը, որտեղ նստում էր Սահակ կաթողիկոսը, եղավ հայկական դպրոցի և հայ գրականության առաջին օրրանը:

Աստվածաշունչը հայերեն թարգմանելու ոգին և գլխավոր թարգմանիչը Սահակ Պարթևն էր, քանի որ նա էր Հայաստանում ամենաբարձր կրթություն ըստացած մարդը, հունարեն և ասորերեն ամենալավ իմացողն ու հույն գրականության ամենահմուտ գիտակը:

Սկզբից Աստվածաշունչը ասորերենից հունարեն սկսեց թարգմանել Մեսրոպ Մաշտոցը իր աշակերտների հետ: Հետո նրա աշակերտները Կոստանդնուպոլսից բերեցին հունարեն Աստվածաշնչի առաջնակարգ օրինակ, և այս անգամ Սահակ Պարթևը, որպես լավագույն հունագետ, սկսեց ճշգրտել ասորերենից կատարված թարգմանությունը ըստ հունարեն բընագրի, շատ հատվածներ էլ թարգմանեց նորից:

Ղազար Փարպեցին գրում է, որ Մաշտոցի գլխավորությամբ մի խումբ այցելել է Սահակ կաթողիկոսին և խնդրել, որ նա ձեռնարկի «հոգևոր աշխատանքի ենթարկել և թարգմանել Աստվածաշնչի կըտակարանները հույն լեզվից հայերեն»: Կաթողիկոսը հավանություն է տվել այս խնդրանքին «և անվեհեր ջանքերով գի-



Պարսից Արտաշիր արքան գահընկեց է անում Հայոց Խոսրով թագավորին

շեր ու ցերեկ թարգմանեց ամբողջ կտակարանները»,— վկայում է Ղազար Փարպեցին: Այս թարգմանությանը ևս մասնակցել են Մաշտոցը և երկուսի աշակերտներից մի քանիսը:

Հայոց տառերի գյուտը կատարվեց Սահակի կաթողիկոսության 18-րդ տարում՝ 405 թվականին: Դրանից հետո շուրջ 30 տարի անց նոր միայն ավարտվեց Աստվածաշնչի ամբողջական ու վերջնական հայերեն թարգմանությունը: Այդ ժամանակ Սահակ Պարթևն արդեն 87 տարեկան էր: Աստվածաշնչի թագմանությունից բացի՝ Սահակ Պարթևը թարգմանել է հույն եկեղեցական հեղինակների մի շարք երկեր: Նա կազմել է հայոց եկեղեցու պատարագի կանոնը՝ Պատարագամատույցը, նրա կարգադրությամբ էր, որ Մեծ Հայքի ամբողջ տարածքում, նաև Փոքր Հայքում ու հայաբնակ այլ վայրերում հայ եկեղեցուց հանվեցին հունարեն և ասորերեն լեզուները և փոխարինվեցին հայերենով: Ժամերգության ամբողջ կարգը սկսեց կատարվել հայերեն: Այդ կարգը որոշում էին Սահակ Պարթևն ու Մեսրոպ Մաշտոցը միասին:

Այնուհետև, Սահակ Պարթևը Մաշտոցին օգնում էր հայոց եկեղեցու ծիսարանը կազմելու գործում: Այդ ծիսարանը, որ հետո նրա հեղինակի՝ Մեսրոպ Մաշտոցի անունով կոչվեց «Մաշտոց», վերաբերում էր երեխա կնքելու, ամուսնության և այլ ծեսերի: Նախքան այդ՝ հայերի ծիսարանը ևս հունարեն էր: Սահակ Պարթևը նաև հայերեն գրված առաջին կանոնների հեղինակն է: Նա մշակեց եկեղեցական, աշխարհիկ, ընտանեկան կյանքի, ինչպես և այլ բնույթի մի շարք կանոններ, որոնք հիմք դարձան հայոց «Կանոնագրքի»:

Սահակ Պարթևը Մաշտոցի հետ եղավ հայոց գրավոր բանաստեղծության հիմնադիրը. նա գրեց մի շարք հոգևոր բանաստեղծություններ՝ շարականներ, որոնք մտան հայոց Շարակնոցի (շարականների ժողովածուի) մեջ:

Ահա մի քառատող Սահակ Պարթևի բանաստեղծություններից.

Ի ծերոց բղխեալ օրհնութիւն
Եւ ի տղայոց՝ փառաբանութիւն.
Եւ անդադար ձայնիւ օրհնէին՝
Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն:

Աշխարհաբար՝

Օրհնություն էր բխում ծերերից
Փառաբանություն՝ երեխաներից,
Եվ օրհնում էին անդադար ձայնով՝
Տիրոջ անունով եկողն օրհնյալ է:

Ղազար Փարպեցին գրում է. «Հայոց ամբողջ երկիրը լցվեց Տիրոջ գիտությամբ՝ Սահակ Սուրբ հայրապետի վըտակներից՝ այն շատ գետերի նման, որոնք լցնում են ծովը»:

Սահակ կաթողիկոսի ժամանակներում ուժեղացել էր ասորական եկեղեցին, որի կենտրոնը Պարսկաստանում էր: Պարսիկները փորձում էին Հայաստանի արևելյան մասում մեծացնել ասորական եկեղեցու ազդեցությունը, որ նշանակում էր նաև Պարսկաստանի ազդեցություն:

Բյուզանդիայի Արկադիոս կայսրը (395—408 թթ.) Պարսկաստանի թագավոր Հազկերտ I-ի հետ (399—420 թվականներ) լավ հարաբերություններ հաստատեց: Հազկերտն այդ նկատի ունենալով, գուցե և իր անձնական հակումների պատճառով որոշ ժամանակ Պարսկաստանի քրիստոնյաներին բարվոք վիճակ շնորհեց: Պարսկաստանում քրիստոնեությունը ասորերեն լեզվով էր տարածվում, և քրիստոնյա եպիսկոպոսների, քահանաների զգալի մասն ասորիներ էին: 410 թվականից Տիզբոնում պետության կողմից ճանաչվեց ասորի կաթողիկոսությունը:

Նախքան այդ էլ ասորի հոգևորականները գալիս էին Հայաստան, և այստեղ հոգևորականների մի զգալի մասն ասորիներ էին: Նույնիսկ Հայաստանում կաթողիկոս եղավ ասորի Դանիելը: Իսկ Պարսկաստանում քրիստոնեությունը պաշտոնապես ճանաչվելուց հետո, ասորի հոգևորականներն ավելի մեծ ջանքեր էին գործադրում Հայաստանում հաստատվելու համար: Դրա արդյունքը կարող էր լինել Պարսկաստանի նաև հոգևոր ազդեցության մեծացում Հայքում: Հայաստանի մեծ մասն արդեն քաղաքականապես ենթակա էր Պարսկաստանին: Բայց Հայքը պահպանում էր իր հոգևոր անկախությունը: Այժմ փորձ էր արվում նաև այդ անկախությունը թուլացնել ու վերացնել:

Դա գրերի գյուտից հետո էր, երբ Հայաստանի եկեղեցին սկսել էր հայալեզու դառնալ:

Սահակ Պարթևը զգուշորեն, բայց և հետևողականորեն դիմադրում էր պարսկա-ասորական եկեղեցու այդ գործունեությանը:

(շարունակելի)



Միշտ, երբ դժվար է եղել մեր ժողովրդի համար, Իսահակյանի քնարը նրա հետ է եղել: Բանաստեղծի կյանքի ու ստեղծագործության արշալույսը զուգադիպեց հայ ժողովրդի ազգային ապստամբական պայքարի հետ, և որպես հայ մարդ, որպես հայրենասեր ու մտածող անհատականություն, Իսահակյանը՝ դեռ բոլորովին երիտասարդ՝ զինվորագրվեց այդ շարժմանը և դարձավ նրա պայքարի ջատագովը:

Արևմտյան Հայաստանում ծնվեց հայդուկային (ֆիդայական) շարժումը, որը բնականաբար պետք է ծներ իր երգչին: Այդ երգիչը դարձավ Ավետիք Իսահակյանը: Երիտասարդ հեղինակը, որն իր առաջին գրքով արդեն ձեռք էր բերել ժողովրդական բանաստեղծի տիտղոս, արդեն իր ետևում ուներ քաղաքական պայքարի պատկառելի փորձ՝ մեկ տարվա բանտարկություն Երևանի բերդում, օդեսյան աքսոր, մշտական հսկողություն Թիֆլիսի ժանդարմերիայի կողմից...

Եվ թեև նրա հայդուկային երգերը խիստ արգելքի տակ էին հայրենիքում, սակայն դրանք հայ ժողովրդին էին հասնում հայրենասիրական շրջաններում մեծ տարածում ունեցող «Դրոշակ» թերթի միջոցով: «Դրոշակում» հրապարակվող հայդուկային շարքի բանաստեղծությունները Իսահակյանը ստորագրում էր «Հայ-գուսան» անվամբ: Հայ կյանքի երկնակամարում թևածում էին «Հայ-գուսանի» բոցաշունչ ու հրեղեն ֆիդայական երգերը՝ «Աղբյուր Սերոբին», «Սալնո ձորերում, կըռվի ձորեն կուգաս...», «Ինձ տեղ տվեք, Սիփան սարեր...», «Ոսկան ախպեր, սարեն կուգաս...», «Սուրբ հայրենիքս երգել կուզեի», «Քաջերին» և շատ ուրիշներ, որոնք «Երգեր ու վերքերի» սիրված հեղինակին բերին նոր՝ ազգային ազատագրական պայքարի շեփորահարի հռչակ:

«Գողթան քնարի, որ ազատության...» պոեմի բնաբանում Իսահակյանը խոստովանել է.

«Սազը չի թողնում, որ կտրիճ դառնամ,
Թուրը չի թողնում, որ գուսան դառնամ»:

Հիրավի, Իսահակյանը ծնված էր ֆիդայի լինելու համար, եթե չլիներ բանաստեղծի աստվածատուր շնորհքը: Սակայն նա չեղավ սոսկ

բանաստեղծ, նա եղավ ֆիդայի-բանաստեղծ, որն իր ողջ կյանքում հավատարիմ մնաց հայրենիքի ազատագրության իր ուխտին:

Այսօր ևս Իսահակյանը մեզ հետ է, և նրա խրոխտ երգերը՝ ուղղված Վանի ու Սասունի, Զեյթունի ու Կիլիկիայի հերոսամարտերի հերոսներին, հիմա նույն ոգով հնչում են Արցախի ու Գանձակի հայոց երկրամասի մերօրյա հերոս պաշտպանների համար, տանում նոր խիզախումների ու խանդավառում նրանց ոգին:

Ներկայացնում ենք բանաստեղծի մի քանի գործեր, որոնք խորհրդային տարիներին չեն տպագրվել:

ԱՎԻԿ ԻՍԱՀԱԿՅԱՆ

## ՔԱՋԵՐԻՆ

Մռավ սարերից սավառնեց քամին,
Դրոշակը մեր հպարտ ծըփծըփաց.
Տեսե՛ք, դաշտերից կուգա թշնամին,—
Սրբազան կռվի կոչը որոտաց:
Է՜յ, հայ ախպրտիք, եղջյուր հնչեցե՛ք,
Իջե՛ք ժայռերից, անհաղթ արծիվներ.
Սարերից պոռթկած հուր ու ջրի պես
Թափվեցե՛ք ստոր դուշմանի գլխով.—
Նա՛— մեր դրացին, և նամարդ, և չա՛ր,
Գիշերը գողտուկ ելավ մեզ վրա
Ու մեր թիկունքից ծածո՛ւկ, գաղտնաբա՛ր
Սողաց օձի պես, ելավ մեզ վրա.
Ջարդեցե՛ք, ջնջխե՛ք, էդ նամարդ օձին,
Որին մենք, ավա՜ղ, հազար տարինե՜ր,
Տաքացրեցինք մեր ազնիվ ծոցին
Հազար տարինե՜ր, հազար տարինե՜ր:
Նա մեր արյունը խմեց ու ծծեց,
Բայց համբերեցինք ուղի՛ղ սրբի պես.
Մենք խրատեցինք, իսկ նա մեզ ծեծեց,
Բայց համբուրեցինք նրան ախպոր պես...
Ջա՛ն, ազիզ Արա՛զ, ինչպե՞ս դու հիմա
Մեր վառ արյունով կարմիր ես կապե.
Մեզ ի՞նչ, ամոթից թո՛ղ նա սևանա,
Ո՛վ ճառել գիտե, կռվել չգիտե:
Վա՛ռ, կարմի՛ր հագիր, դո՛ւ հայ ժողովուրդ,
Եվ սուրդ շարժե՛, քեզ ճանապարհ բաց.
Այս աշխարհի մեջ սուրն է միշտ կտրող—
Կտրի՛ր, ու տիրի՛ր-անհա՛ղթ, հզո՛ր կաց:
Եվ ոտքդ ամո՛ւր դու խփի՛ր երկրին,
Հողիդ ու տանդ տերը դուն եղի՛ր,
Է՜յ, դո՛ւ արևի ճամփորդ վաղեմի,
Սրով, գոտեպինդ և առաջ քայլի՛ր.
Անհողդողդ գնա՛ դեպի լույսն-արև,
Եվ ազգերն ամեն, հարգանքի նշան,
Հետ-հետ գնալով և տալով բարև
Ազա՛տ, անարգե՛լ քեզ ճամփա կտան...

1906 թ., հունվարի 8

Ալեքսանդրապոլ

●●●

Ձեր շարքերի մեջ, կտրիճ ընկերներ,
Կանգնած եմ՝ հոգիս հիացքով վառված.
— Դեպի կովի դաշտ ազատ, անվեհեր
Գնում եք, թռնում փոթորիկ դառած:

Դուք ժողովրդի ազնիվ զավակներ,
Սուրբ ազատության հուրն է ձեր սրտում,
Վառե՛ք, բորբոքե՛ք քարեր ու սրտեր
Ձեր կյանքով շնչող մայր-հայրենիքում:

Ձեր հրացանը վրեժով լցրեք՝
Ջարդեք ու փշրեք նամարդ թշնամուն,
Ու մահը ձեզնից հեռո՜ւ կփախնի՝
Փախնի, կընգտնի նամարդ թշնամուն:

Սլացե՛ք առա՜ջ և ետ մի նայեք,
Մենք ենք ձեզ նայում, չէ թե դուք մեզի.
Կռվե՛ք քաջի պես, քաջի պես ընկեք,
Կեցցե՜ ձեր մահը, որ կյանք կծնի:

●●●

Վնհ ազատության սերը չէ մենակ,
Որ ինձ մղում է կռվի հանդես,—
Հրեղեն ոխն է, վրեժն անհատակ,
Որ սիրտս է այրում ժահր-թույների պես...

Ա՜խ, թե լինեի կայծակ-հրաբուխ
Մռայլ Տավրոսի ճակատից վիժած,
Պիտի փշրեի, շանթեի պիտի
Թշնամու կուրծքը չա՛ր, արյունախանձ...

Բայց հոգուս խորքում օձեր են զեռում,—
Վրեժի իժե՜ր-ս՜և, կծի՛կ-կծի՛կ.
— Ու ռո՛ւմբ է սիրտս, և պիտի պայթի,
Թշնամու գլխուն նա՛ պիտի պայթի...

●●●

Սուրբ հայրենիքս երգել կուզեի
Իմ երգերի մեջ հոգեբուխ, հնչուն.
Երկնի հետ խոսող չեռներն վիթխարի.
Եվ թռիչքն արծվի այն վեհ բարձունքում:

Մայր-ժողովուրդս երգել կուզեի.
Հորձուտ Արաքսը չքնաղ ափերով,
Հրեղեն նժույգն երգել կուզեի
Մասսա լանջերում սրարշավ տալով:

Հայ կտրիճներին երգել կուզեի
Եվ կռվի կոչը՝ հպարտ ու վայրի,
Սուրբ ազատության տոնը հաղթական.
Եվ վառ ապագան իմ հայրենիքի...

Բայց կոպիտ ձեռներ
Փշրեցին սրտիս քնարը՝ բեկ-բեկ.
Բայց կոպիտ ձեռներ
Կտրեցին նրա լարերը՝ մեկ-մեկ...

Արձակի փոքր ձևերը, որ գոյություն են ունեցել հայ գրականության սկզբնավորումից ի վեր, երկար ժամանակ ուշադրություն չեն արժանացել, մնացել են պատմագրության ստվերում: Դրանց առանձնապես կարևորություն չեն տվել նաև միջնադարյան ժողովածուների կազմողները: Զրույցների հեղինակներն ու հավաքողները մեզ չեն ավանդել նույնիսկ իրենց անունները:

Հարուստ ու բազմաբնույթ է միջնադարյան գեղարվեստական արձակը: Այստեղ հանդիպում են պատմագրությունից կամ բանահյուսությունից փոխառված աշխարհիկ զրույցների գրական մշակումներ, պատերազմական իրադարձությունների ու արկածների աշխույժ նկարագրություններ, իրականության ինչ-ինչ կողմերը բացահայտող խորհրդածություններ, բնարական տրամադրությամբ ուրվագծված պատկերներ: Այս հանգամանքների բերումով, ինչպես և գեղարվեստական պատկերման եղանակներով ու ձևերով, կառուցվածքով ու այլևայլ հատկանիշներով այդ զրույցներն ու մանրավեպերը աղերսվում են մերթ առակին կամ իրապատում հեքիաթին, մերթ հիշեցնում նորավեպ: Կենսական նյութի ընդգրկումով ու մատուցման եղանակով, պատմելաձևով միջնադարյան արձակը շատ այլազան է ու բազմաբովանդակ՝ ինչպես կյանքն ինքը: Դրանք մեծ մասամբ ավարտուն, ամբողջական գործեր են, որ ժամանցից ավելի, խրատաուսուցական նպատակ են հետապնդել, բարոյական դասեր տվել ընթերցողներին և ունկնդիրներին: Այդպես է նաև «Յոթ հսկա եղբայրները և նրանց քույրը» պատմական փոքրիկ պատկերը՝ հայրենասիրական որոշակի լիցքով, որ վերաբերում է Կիլիկիայի Հայոց թագավորության մայրամուտի շրջանին:

# ՅՈԹ ՀՍԿԱ ԵՂԲԱՅՐՆԵՐ

Եգիպտոսի սուլթանը բազում զորք ուղարկեց Կիլիկիա՝ Սիս: Եվ լսելով, թագավորը ձի նստեց և գնաց իր քաջերի մոտ:

Յոթ եղբայր կային: Նրանք հսկա էին, ունեին մի ամրոց, որ կոչվում էր Փերիների բերդ: Եվ տեղի անունը Տնրենտ էր: Լսելով թագավորի գալը, նրանք ընդառաջ ելան, որովհետև եղբայրները սեղան էին նստել և ուրախանում էին գինով: Եվ թագավորը պատմեց եղելությունը:

Եվ նրանք ասում են.

— Արքա՛, ապրիր հավիտյան և մի՛ հոգա այդ մասին: Արի մեր սեղանին, ուրախանանք այս գիշեր և մարդ ուղարկենք, տեսնենք, դա ստո՞ւյգ է, թե՞ ոչ:

Եվ կանչեցին փոքր եղբորը, սակավ զորքով ուղարկեցին տեսնելու եղածը. որ տեսնի և իմանա, և հետո մեծ զորքով գնան նրանց վրա: Եվ գնաց կրտսեր եղբայրը, տեսավ՝ եկել բանակել են Ծիհան գետի ափին, և չկարեցավ համբերել քաջը: Սակավ մարդկանցով կռվեց նրանց դեմ. ոմանց ջրահեղձ արեց, ոմանց՝ փախստական, և շատերին սուր-սուսերով մաշեց ու նրանց բանակը առ ու ավար դարձրեց: Եվ որպես եղածի ապացույց, կտրել տվեց սպանվածների քթերն ու ականջները և բերեց, մինչև որ լուսացավ:

Եվ թագավորն ու եղբայրները ուրախանում էին այն գիշեր և սպասում նրա գալուն: Եվ տեսան, որ գալիս էր ավարով ու կառքերով, և լսեցին, տեսան քթերն ու ականջները, որ բարձած էին կառքերը, և զարմացան նրա սխրանքով:

Եվ թագավորը բոլոր յոթ եղբայրներին մեծարեց և բերելով իր պալատը՝ քառասուն օր պատվեց ուտեստով, ըմպելիքով և զանազան բաներով: Եվ երբ լրացավ քառասուն օրը, կամեցավ նվերներով ճանապարհել և երախտագիտություն հայտնեց նրանց: Եվ արքայի իշխանները նախանձելով՝ ասում են նրան.

— Դրանց փոքր եղբայրը, որ այդքան քաջ է, մեծերն ի՞նչ կլինեն: Սպանիր նրանց, եթե ոչ՝ կխլեն թագավորությունդ:— Եվ թագավորին խելքից հանեցին:

— Ի՞նչ արած, չենք կարող դրանց



Նկարը՝ ՄԱՐԻՆԱ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ







ընդդիմանալ:

Ասում են թագավորին.

— Դու հոգ մի անի, մենք գիտենք՝ ինչ կանենք:

Եվ քառասուն օրից հետո պատվո ընծաներ տվեց թագավորը և գրեց տասներկու գրություն, և ճանապարհեցին նրանց: Եվ նրանք դա չիմացան: Գնացին իջան աղբյուրի մոտ, քանի որ ծարավ էին, և խմելով՝ յոթն էլ մեռան: Եվ լսելով՝ նրանց մայրը փետտում էր մազերը և ճչում՝ անիծելով թագավորին:

Եվ նրան ասում են.

—Թագավորը մեղք չունի, հանցանք չի գործել նրանց դեմ, այլ սրանք՝ յոթ որդիներդ այս տեղը եկան, նստեցին և ջուր խմեցին և մեռան:

Եվ մայրն անիծեց աղբյուրը.

— Սև ակ լինես:

Մայրը ևս նույն ժամին մահացավ: Եվ նրան թաղեցին: Եվ թագավորը Սևակնի մոտ նրանց վրա եկեղեցի կառուցեց: Գրեց.

Յոթ քաջազուններ խաղաղ, անվրդով
Իրենց ամրոցում ապրում էին գոհ.
Կրտսեր եղբայրը գոռ մարտում ջարդեց
Սուլթանին, որ Սիսն ուզում էր զավթել:

Եվ երբ Մսրա սուլթանը իմացավ եղելությունը և բոլոր քաջերի մահը, ստուգելու համար թագավորի մոտ ուղարկեց քառասուն ըմբիշ, որ տեսնեն, թե կա՞ն Սիս քաղաքում այլ քաջեր. որովհետև հոգու խորքում մտմտում էր հարձակվել Սիսի վրա: Եվ ըմբիշները գալով թագավորի մոտ, ասում են.

— Եգիպտոսի սուլթանը մեզ ուղարկեց քեզ մոտ, որ գոտեմարտենք քո քաջերի հետ:

Եվ թագավորն ասում է.

— Թող այդպես լինի:

Եվ իր իշխանության տակ գտնվող ամբողջ երկրում հայտարարել տվեց, և չգտնվեցին քաջեր, որովհետև չկային: Եվ մտովի հիշեց յոթ եղբայրներին, որ անմեղ զոհ դարձան:

Յոթ եղբայրների մեռնելուց հետո մնացել էր նրանց քույրը: Որովհետև մենակ մնաց, երկյուղից փախավ և գնաց, մի քարանձավ մտավ որոշ ժամանակ: Եվ մի օր ելավ գնաց ջրաղացը՝ գլխին դրած երկու կոտ գարի: Եվ ջրաղացպանը ջրաղացում էր: Լցրեց, որ աղա: Եկավ մի երիտասարդ, տեսավ և հավանեց աղջկան: Եվ աղջիկը բռնելով նրա հագուստի տուտը, մի ձեռքով բարձրացրեց տան երդիկը, տակը դրեց հագուստի տուտը և բաց թողեց, և նա կախվեց հանդերձից գլխիվայր, մինչև իրքն աղաց այնքան ալյուրը: Եվ նա մեղա էր կանչում ու աղաղակում: Եվ իջեցրեց ներքև և պատվիրեց՝

— Այդ քեզ խրատ լինի:

Եվ այնժամ, որ քաջեր էին փնտրում ամեն տեղ և հրապարակներում հայտարարում՝ «Այսքան նվեր նրան, որ քաջի տեղ գիտնա», երիտասարդը հարցնում է մի ծերի և ասում.

— Ով գիտնա և ասի, թե մեղք ունենա՝ թագավորը կների՞:

Ծերն ասում է.

— Ոչ միայն մեղքը կների, այլև շատ պարգևներ կտա:

Պատմում է երիտասարդը ջրաղացի դեպքը և աղջկա քաջությունը: Եվ ծերունին երիտասարդին վերցնում գնում է թագավորի մոտ, և ավետում են ուրախ լուրը: Եվ արքան նրանց բազում մեծ նվերներ տվեց:

Եվ գտան աղջկան, բերին: Եկան քառասուն ըմբիշներ, և աղջիկը նրանց հետ գոտեմարտեց: Եվ գոտեմարտից առաջ աղջիկն ասում է ըմբիշների ավագին.

— Ես կին եմ, և դու՝ այր. հարմար չէ գոտեմարտել, այլ երեք անգամ դու հարձակվիր, և երեք անգամ ես հարձակվեմ քեզ վրա: Նախ դու արի,— ասաց աղջիկը,— որովհետև դու տղամարդ ես:

Եվ հարձակվեց ավագ ըմբիշը: Հարձակվեց երեք անգամ և չկարեցավ հաղթել: Հետո աղջիկը հարձակվեց ըմբշապետի վրա և բարձրացրեց մեկ ձեռքով ու հաղթեց, և մարդ ուղարկեց թագավորի մոտ, թե՝

— Սպանե՞մ, թե՞ գետնով տամ:

Եվ պատասխանեց թագավորը.

— Թե կարող է՝ թող հոգին հանի:

Եվ մինչև պատգամավորը գնաց ու եկավ՝ ըմբիշն աղջկա բազկի վրա էր: Եվ լսելով թագավորի պատասխանը՝ գետին զարկեց և սպանեց նրան: Եվ զարմացան բոլորը, և մյուս երեսունինը ըմբիշները չեկան, քանի որ վախեցան և ամոթով դարձան սուլթանի մոտ ու պատմեցին եղելությունը:

Եվ թագավորն ու իշխանները մեծամեծ պարգևներ տվին աղջկան:

Սա եղավ 1387-ին, որ հայոց ՊԼԶ (836) թվականն է: Այսպես քաջ էին Սիս քաղաքում և Կիլիկիա աշխարհում. հիմա զուրկ ենք թե՛ թագավորից և թե՛ իշխաններից:

Աշխարհաբար վերապատմեց

ԱՐՇԱԿ ՄԱԴՈՅԱՆԸ

## Արցախ, Շուշի և...

## կեղեքված մանկություն

Հնատիպ հրատարակության բացիկներից կատարված այս լուսանկարները ավելի քան 80 տարվա պատմություն ունեն: Իսկ ամենահաս լուսանկարիչը արել է դրանք այն թվականներին, երբ դեռ դարեր առաջ քաջարի ու հեռատես Ավան հարյուրապետի հիմնադրած, խիզախասիրտ մելիքների պաշտպանած ու ընդարձակած, միայն քանդելու ու ավերելու շնորհով օժտված հրոսակներին ոչ մի անգամ կուլ չգնացած, բոլոր ժամանակներում Արցախի սիրտը եղած պերճաշուք Շուշի քաղաքը համարյա ամբողջովին հայաշունչ էր, հայալեցուն: Այն թըվականներին, երբ դեռ աչք էին շոյում քաղաքի բարետես ու մաքուր փողոցները, մեկ և երկհարկանի հարմարավետ տնակները, այգիների ու պտղատու ծառաստանների մեջ թաղված քաղաքային թաղամասերը (նկ. 1), երբ արդեն Շուշին դարձել էր ողջ Անդրկովկասի խոշորագույն քաղաքներից, հայոց մշակույթի, գիտության ու արվեստի կարևոր կենտրոններից մեկը: Մյուս երկու լուսանկարներում անհոգ մանկություն է պատկերված, դարասկզբի Շուշիի պատանեկան կյանքից երկու քաղցրիկ պատառիկ: Ահա դրանցից մեկը (նկ. 2), ուր տեսնում ենք Շուշիի անդնդախոր կիրճի վրա հարմարավետ տեղավորված երեխաներին: Նրանց կարծես բավականություն է պատճառում հարազատ քաղաքի թիկունքում բացված հեքիաթային համայնապատկերը, ներքևում միալար խշշոցով թավալվող գետի գրավչությունը: Նման բովանդակությամբ հաջորդ տեսարանում (նկ. 3) արտապատկերված են քաղաքի Մեղրեցոց Սուրբ Աստվածածին եկեղեցու արական դպրոցի սովորողներ: Բազմաքանակ հայ ճարտարապետական գոհարների նման՝ հրկիզվելու, վերանալու բախտին արժանացած այս եկեղեցին կառուցված էր Շուշիի գեղեցկագույն մրգատու այգիների մեջ, մեղրեցոց (այստեղ վերաբնակվածների նախկին բնակավայրի անունով) թաղամասում:



Շուշի. Մեղրեցոց եկեղեցու այգում

Հավանաբար դպրոցական զանգը դասավարտ է ազդարարել, և երեխաները դուրս են վազել դասասենյակներից, ու եկեղեցու խաղաղ ու լռակյաց պատերը նորից ողողվել են նրանց ուրախ ճիչ ու աղմուկով: Եվ հենց այստեղ՝ եկեղեցուն կից այգում էլ նրանց «բռնացրել» է շուշեցի բազմավաստակ լուսանկարիչ Բ. Տեր-Սահակյանցը: Ուշադիր նայեք. իրենց տարիքի համեմատ անբնականորեն լուրջ ու գիտուն, կենտրոնացած են այս փոքրիկների դեմքերը՝ արցախցուն հատուկ տարբերակիչ գծերով, որ կոչում ենք համբերություն, համառություն, աշխատասիրություն... Ահա որտեղից են սկսվում գիտության ու արվեստի, գրա-

կանության ու երաժշտության նկատմամբ արցախցուն հատուկ բացառիկ սիրո ու նվիրումի ակունքները: Արդեն 20-րդ դարի նախաշեմին Շուշի քաղաքում գործում էին տասից ավելի հայկական ուսումնական հաստատություններ՝ դպրոցներ, ուսումնարաններ ու գիմնազիաներ, հրատարակվում էին 20-ից ավելի թերթեր ու ամսագրեր: Այսպիսի հարուստ մտավոր եռանդի և ունակությունների առումով Հայաստանում Շուշիի հետ մրցակցում էր թերևս միայն Երևանը: Ո՞վ մտավոր կարողությունները ուսման ասպարեզում բոլորին են հայտնի: Եթե Ռուսաստանի միջնակարգ ու բարձրագույն ուսումնական հաստատություններում հայերը սովորաբար առանձնանում էին իրենց հաջողություններով, ապա նրանց մեջ էլ լավագույնները արցախյան աշխարհի հայ մանուկները ու պատանյակները էին: Արցախահայերը ցարական բանակին նվիրված ու անձնվեր բազմաթիվ գեներալներ ու հմուտ ռազմագետներ են տվել: Անմար փառքով օծված



Շուշի

գիտե, ինչպես դասավորվեց միամիտ ու խաղաղ մանկություն վայելած այս երեխաների հետագա ճակատագիրը: Չէ՞ որ դաժան, եղեռնական 1920-ական թվականներին նրանցից ամեն մեկը 15—25 տարեկան մի-մի պայծառ կանթեղներ են եղել քաղաքում, կատարյալ թիրախ՝ արյունարբու թուրքերի համար, որոնց ընպատակը առաջին հերթին լուսավոր ու ազատամիտ ոգու ջահակիրների բնաջնջումն էր: Իսկ միգուցե նրանցից ոմանք դարձել են այն ուժգին ու անմար լուսարձակները, որոնք ողջ աշխարհին ցուցադրեցին մարդկային մտքի ու շնորհի այն շռնդալից աղբյուրները, որ ունեցել է Շուշին հայ իրականության մեջ:

Արցախցիների մեծ սերն ու բացառիկ ռազմական գործիչներից անկարելի է չնշել կոմս Մ. Լոռիս-Մելիքովին, գեներալներ՝ Տեր-Ղուկասովին, Բեհբութովին, Մադաթովին, Շելկովնիկովին, Լազարևին և այլոց, որոնք կամ անմիջապես Արցախի ծնունդ են, կամ էլ այդտեղից սերված: Կոմս Մ. Լոռիս-Մելիքովը 1877—78 թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ Կովկասյան կորպուսի գլխավոր հրամանատարն էր: Նրա ղեկավարությամբ թշնամու բանակին հասցվեց գլխավոր հարվածը Ալեքսանդրապոլ—Կարս ուղղությամբ, անձնական հմուտ գործողություններով և նուրբ ստրատեգի «հոտառությամբ» նա ջախջախեց թուրք Հուսեյին փաշայի բանակն ու նվաճեց Արդահանի կարևորագույն ամրոցը: Բա-

յազետի նվաճման ժամանակ իր քաջագործություններով հռչակվեց գեներալ Բ. Տեր-Ղուկասովը, որի ղեկավարած Երևանյան ջոկատը տառացիորեն հողմացրիվ արեց տխրահռչակ Ալի-Քեմալ փաշայի զորքերը: Կարսի ճակատում առանձնապես աչքի ընկավ գեներալ Ծելկովնիկովը՝ ևս մեկ մարդակերի՝ Մուխթար փաշայի զորքերի դեմ մի քանի անգամ կատաղի ճակատամարտ մղած, անմար լուսապսակով իրեն զարդարած հերոսը: Իսկ Ալաջայի հայտնի ճակատամարտը դարձավ թուրք 7 փաշաների ու 10000 զինվորների և սպաների գերեվարման դաշտը, որտեղ ռազմական դիրիժորի ամբողջ տաղանդով փայլեց գեներալ Լազարևը:

Ռուսական կայսրությունն էլ իր հերթին ըստ արժանվույն էր գնահատում քաջարի հայորդիների տաղանդը: Այս տեսակետից հետաքրքիր է հետևյալ փաստը. երբ շնորհաշատ հայ իշխան Բեհբությովը ներկայացվեց պարգևի, կայսր Նիկոլայ Պավլովիչը շնորհելով նրան շքանշան, ասաց գեներալին. «Դու զարմացրիր Ռուսաստանը, իսկ ես կզարմացնեմ քեզ»: Եվ կայսրը Բեհբությովին ընծայեց Ռուսաստանի բարձրագույն ռազմական շքանշանը, չնայած նման պարգևի համար նա դեռևս չուներ համապատասխան զինվորական կոչում և ոչ էլ նախնական անհրաժեշտ պարգևներ:

Իսկ քանի՜-քանի՜ մեծագույն դեմքեր, արդյունաբերողներ ու առևտրականներ, բանկատերեր ու ոսկեձեռիկ վարպետներ է աշխարհին տվել Արցախը: Հիշենք, օրինակ՝ հայտնի բանկատերեր Ժամհարյան եղբայրներին Մոսկվայում, գործերեց արդյունաբերողներ Գյումուշգերդյան եղբայրներին ու Ղարագյոզյաններին Կ. Պոլիսում, Պետերբուրգի, Թիֆլիսի ու Բաքվի բազմաթիվ ազդեցիկ մարդկանց, Արցախից սերված հայ էր նաև Եգիպտոսի քաղաքական կյանքում մնայուն հետք թողած պրեմիեր-մինիստր Նուբար փաշայի հայրը, որն իր ժամանակին հասարակական ակտիվ գործունեություն վարող խոշոր արդյունաբերող էր հայաշատ Զմյուռնիա քաղաքում: Բոնապարտ Նապոլեոնը, որ միշտ աշխատում էր իրեն շրջապատել նվիրված ու քաջարի մարդկանցով, ձևավորեց հատուկ հեծելավաշտ, ուր կային շուրջ 20 հայորդիներ, և վերջիններիս մեջ նաև մի քանի արցախցիներ: Արցախի անհնազանդ ու ազատամիտ ուստրերըն ու դուստրերը միշտ և ամենուր հավատարմորեն են ծառայել ու ծաղկեցրել այն երկիրը, ուր նրանք հանգրվան են ստացել: Իսկ նորագույն ժամանակներում միայն Ծուշին երկրին տվեց 5 ԽՍՀՄ հերոսներ (չմոռանանք կրկնակի հերոս, «Բալթիկայի մրրկահավ» Նելսոն Ստեփանյանին), 3 գեներալներ, 6 ակադեմիկոսներ, 13 գրողներ, արվեստի շուրջ 30 ականավոր գործիչներ: Միայն Ծուշին...

Իսկ ինչպես չհիշես հայ ժողովրդի փառապանծ զավակներից մեկին Մեծ Թաղլար գյուղից՝ ավիացիայի մարշալ Արմենակ Խանփերյանցին: Ի դեպ, հայ առաջին օդաչուներից են արցախաբնակներ Թևոս Մանուչարովն ու Թորոս Թորոսյանը՝ Գեորգիևյան խաչի խիզախ ասպետներ, որոնք դեռ 1918 թ. մասնակցեցին Բաքվի օդային պաշտպանությանը, իսկ քաղաքացիական պատերազմի տարիներին Հարավային ճակատում մարտընչում էին սպիտակ կազակների դեմ: Եվ այսպես՝ ամենուր ու ամեն ասպարեզում՝ առաջինը, առաջին շարքերում, ամենապատասխանատու տեղամասերում: Մեկ անգամ էլ հիշենք Կարսի դավադիր հանձնումը թուրքերին, երբ տեղաբնիկների ու միջնաբերդի ամրոցները պաշտպանելու կոչված ռուսական զորքերի փախեփախին հակառակ, իրենց դիրքերից քայլ անգամ չհեռացան արցախցի զինվորներն ու հրետանավորները, հիշենք նաև Սարդարապատի գերմարդկային լարումն ու հուժկու ապտակը լկտիացած թշնամուն, որտեղ մեկ անգամ ևս ամբողջ փայլով շողարձակեց արցախյան «մահապարտների» գնդի խիզախ ընդվզումը:

Արցախյան բարեբեր հողն է ծնունդ տվել հայ մեծ գրող Մուրացանին ու պատմաբան Լեոյին, ժողովրդական արտիստներ Արև Բաղդասարյանին ու Գուրգեն Գաբրիելյանին, հեղափոխական Բ. Կնունյանցին, քանդակագործ՝ Հ. Գյուրջյանին: Բոլորին թվարկել անհնար է, և դրա կարիքն էլ Արցախը չունի, քանզի նա այսօր էլ ամեն ժամ հայ ժողովրդի թե՛ նյութական և թե՛ մարդկային գանձարանին է ընծայում առաջին մեծության արժեքներ ու մասունքներ, միշտ վառ է պահում մեր ժողովրդի ազատագրական պայքարի ոգին ու դեպի վերջնական հաղթանակ առաջնորդող հուրհրան ջահը:

ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ,
ԻԳՈՐ ՋԱՔԱՐՅԱՆ

## *Էջմիածնի հուշակավոր ավետարանը 1000 տարեկան է:*

Հայկական կերպարվեստի մեջ ամենահարուստ բնագավառը մանրանկարչությունն է: Չնայած դարերի ընթացքում բազմաթիվ նվաճողների ավերիչ արշավանքների ժամանակ վիթխարի քանակությամբ հայկական մշակութային ու գեղարվեստական արժեքներ են ոչնչացվել, այնուամենայնիվ, բավական մեծ թվով ձեռագրեր են մեզ հասել, որոնք իրենց էջերում ունեն մանրանկարներ և լուսանցազարդեր: Ծուրջ 25000 հին հայկական ձեռագրեր են պահպանվել ամբողջ աշխարհում, որից մոտ տասը հազարը գտնվում է Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում:

Երկրորդ դարի առաջին կեսին, երբ ձևավորվել է քրիստոնեական դավանանքը և կազմավորվել քրիստոնեական եկեղեցին, կրոնական ծիսակատարությունների ժամանակ պահանջվում էին ժամասացության գրքեր: Սկզբնական շրջանում, ծիսական գրականության բացակայության հետևանքով, Ավետարանները էին փոխարինում դրանց:

«Ավետարան» նշանակում է ավետիք, բարի լուր պարունակող: Ավետարանների բովանդակությունը Քրիստոսի երկրային կյանքին վերաբերող քարոզչության պատմություններն և քրիստոնեական դավանանքի հիմնական դրույթներն են: Մեզ հասած ձեռագիր պատկերազարդ ավետարանները զգալի հետաքրքրություն են ներկայացնում որպես մանրանկարչական արվեստի հուշարձաններ: Հայկական նրկարազարդ ձեռագրերի ճնշող մեծամասնությունը ավետարաններ են: Մեզ հասած հայերեն հնագույն պատկերազարդ ավետարանի օրինակ է «Մլքե թագուհու ավետարանը», որը գրվել և նկարազարդվել է 851 թ., իսկ հետագայում պատկանել Գագիկ Արծրունու կնոջը՝ Մլքե թագուհուն:

Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում պահվող նկարազարդ ձեռագրերից ամենանշանավոր և գիտական շրջանակներում լայն ճանաչում ստացած եզակի հուշարձաններից է «Էջմիածնի ավետարանը»՝ թվագրված 989-ին: Գիրքն ընդգրկում է գեղեցիկ երկաթագրով գրված չորս ավետարանները: Ունի փղոսկրյա հիասքանչ կազմ՝ 36, 5×30,5 սմ մեծության, որը 6-րդ դարի աշխատանք է համարվում: Ավետարանը պարունակում է 35×28 չափի 233 մագաղաթյա թերթ: Կողերից յուրաքանչյուրը բաղկացած է հնգակա՜ն սալիկից, ամեն մի սալիկի վրա պատկերված է առանձին տեսարան: Ձեռագրի վերջում կարված են 6—7-րդ դարերի մանրանկարներ՝ «Զաքարիայի ավետումը», «Մարիամի ավետումը», «Մոգերի երկրպագությունը» և «Մկրտությունը»: Սա վկայում է, որ հայկական գրքային գեղանկարչությունը սկզբնավորվել է 5—6-րդ դարերում: Ձեռագրում պահպանված են տասներորդ դարի վերջի մանրանկարներ՝ երկու էջի վրա զույգ-զույգ պատկերված ավետարանիչները, Քրիստոսը՝ գահի վրա, Պողոս, Պետրոս առաքյալների հետ, Աստվածածինը՝ մանուկ Հիսուսը գրկին, և Աբրահամի զոհաբերությանը վերաբերող, որոնք որոշակի պատկերագրական հետաքրքրություն ունեն և նշանակալից են իրենց գեղարվեստական բարձր արժեքներով: Արտահայտիչ են դեմքերը՝ օժտված ազգային ինքնատիպությամբ: Գեղեցիկ են ձեռագրի տասը խորանները: Օգտագործված են հիմնականում պայտաձև զույգ կամարներ, որոնց հորինվածքը գույնզգույն զարդամոտիվների և լրացուցիչ մանրամասների կիրառմամբ համահնչյուն է մատյանի ընդհանուր բնույթին: «Էջմիածնի ավետարանի» լուսանցքներում նույնպես կան պատկերներ: Գրաֆիկական ոճով այս մանրանկարները առաջին հերթին գրավում են գույների նուրբ զուգորդությամբ. թարմությունը չկորցրած վառ վարդագույնը, կանաչի ու շագանակագույնի մեղմ երանգները, ոսկու զուսպ օգտագործումը կաթնագույն բարձրորակ մագաղաթի ֆոնի վրա մանրանկարներին առանձնակի ներդաշնակություն և հմայք են հաղորդում: Ոճավորված ծառաշուք, բայց ծավալայնությունից զուրկ պատկերների անշարժ, դիմահայաց դիրքը մանրանկարները դարձնում է առանձնակի խստաշունչ և հանդիսավոր: Մարդկային կերպարներին հա-



Աստվածամայրը մանկան հետ

տուկ է պարզ ոճավորումը: Զարմանալիորեն լավ է պահպանված ամբողջ ձեռագիրը: Ներկերը բացառիկ պայծառությամբ և թարմությամբ այսօր էլ զարմանք են պատճառում: Այս ձեռագրի մանրանկարները մի շարք գիտնականների կողմից հատուկ ուսումնասիրության են ենթարկվել: 1820 թ. «Էջմիածնի ավետարանը» միագույն տպագրությամբ Փարիզում հրատարակվել է ֆրանսիացի հայագետ Ֆրեդերիկ Մակլերի ջանքերով: Այս ձեռագրին խոշոր գիտական ուսումնասիրություն է նվիրել հին ռուսական գեղանկարչության խոշոր գիտակ Լ. Ա. Դուռնովոն: Ձեռագրի հետազոտությամբ զբաղվել են նաև գիտնականներ Գ. Բըրոսսեն, Վ. Ստասովը, Ն. Կոնդակովը, Գ. Վայցմանը, Ս. Տեր-Ներսիսյանը և ուրիշներ:

«Էջմիածնի ավետարանի» նկարների ներդաշնակ կառուցվածքի, գույների բարձրաճաշակ համադրության, թեմաների պարզ ու վարպետ վերարտադրության, ինչպես նաև ընդգծված արտահայտչականության շնորհիվ ձեռագիրը դասվում է համաշխարհային արվեստի լավագույն հուշարձանների շարքը: Բացառիկ ձեռագրի գրչության վայրը եղել է Սյունիքի Բղենո Նորավանքի ս. Ստեփանոս եկեղեցին, գրիչը՝ Հովհաննեսը:

ՍԻԼՎԱ ՍՈՒՔԻԱՍՅԱՆ

